ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

1

ՀՈՒՆՎԱՐ

ԵՐԵՎԱՆ • 1975

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակություններից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1 ՀՈՒՆՎԱՐ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ



### ВОПРОСЫ ЭКОНОМИКИ



### МЕЖДУНАРОДНАЯ ЖИЗНЬ



### СТРАНИЦЫ ИСТОРИИ АРМЯНСКОЙ ОБЩЕСТВЕННОЙ МЫСЛИ



### НАШИ ПУБЛИКАЦИИ



### КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ





# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԴԻՄՈՒՄԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Մեր սոցիալիստական հայրենիքը թևակոխեց նոր տարին, 1975 թվականը՝ իններորդ հնգամյակի եզրափակիչ տարին: Ետևում մնացին ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների, նրա մշակած ներքին և արտաքին քաղաքականության իրականացման ուղղությամբ կուսակցության և ժողովրդի կատարած լարված աշխատանքի, նրանց ստեղծագործական ջանքերի չորս տարիները: Մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ այդ տարիներին Սովետական Միությունն զգալիորեն առաջ շարժվեց հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, ամրապնդվեցին նրա միջազգային դիրքերը, նրա հեղինակությունն ու ազդեցությունը ամբողջ աշխարհում:

Սովետական մարդիկ օրինական հպարտության զգացումով են ամփոփում նաև անցած՝ 1974 թվականի իրենց աշխատանքի արդյունքները: Քաղաքների և գյուղերի աշխատավորները, ծավալելով մասսայական սոցիալիստական մրցություն, նոր հաջողությունների հասան տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում:

ԱՆՑԱԾ ՔԱՌԱՄՅԱԿԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆ ԱՅՆ Է, ՈՐ ԱՊԱՀՈՎՎԵՑ ԱՄԲՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԴԻՆԱՄԻԿ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, ՄԵԾ ԱՌԱՋԸՆԹԱՑ ՔԱՅԼ ԿԱՏԱՐՎԵՑ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՍՏԵՂԾՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ:

Շարունակվում է Սովետական Միության տնտեսական հզորության ինտենսիվ մեծացումը: Ավելի բարձր աստիճանի է հասել սոցիալիստական ինդուստրիան: Շարք են մտել հարյուրավոր արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ: Է՛լ ավելի են զարգացել արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կապի բոլոր ճյուղերը: Աճել է աշխատանքի արտադրողականությունը, բարձրացել է արտադրության տեխնիկական մակարդակը, յուրացվել է արտադրանքի արդիական բազմաթիվ տեսակների թողարկումը:

Կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ, որի հիմքերն արդի փուլում դրեց ՍՄԿԿ Կենտկոմի՝ 1965 թվականի մարտյան պլենումը, գյուղատնտեսությունը վստահորեն դառնում է սոցիալիստական էկոնոմիկայի բարձր զարգացած հատվածը: Ամրապնդվել է կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական բազան, ավելացել է հողագործական և անասնապահական մթերքների արտադրությունը:

Սովետական մարդիկ իրապես զգում են ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի պտուղները: Էականորեն բարձրացել է ժողովրդի բարեկեցության մակարդակը: Աճել են բանվորների ու ծառայողների աշխատավարձը, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը: Բարձրացել են ավելի քան 30 մլն մարդու կենսաթոշակները, նպաստներն ու կրթաթոշակները, սահմանված են նպաստներ նվազ ապահովված ընտանիքների երեխաների համար: Լայն մասշտաբներով շարունակվեց բնակարանային շինարարությունը: Հնգամյակի սկզբից բարելավվել են 45 մլն մարդու բնակարանային պայմանները: Փոխվում է մեր քաղաքների ու գյուղերի դեմքը, անընդհատ ավելանում են դպրոցները, հիվանդանոցները, ակումբները, կինոթատրոնները, առևտրի ու կենցաղային սպասարկման ձեռնարկությունները: Այս ամենը համոզիչ վկայում է, որ ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման կուսակցության գիծը մարմնավորվում է կոնկրետ, շոշափելի գործերի մեջ:

Պատշաճ մակարդակի վրա է պահվում երկրի պաշտպանական հզորությունը: Իրենց պարտքին հավատարիմ մեր քաջարի զինված ուժերը հուսալիորեն պահպանում են հայրենիքի սահմանները, ժողովրդի ստեղծարար աշխատանքը, սոցիալիզմի պատմական նվաճումները:

Սովետների երկրի դրությունը, սովետական ժողովրդի բարեկեցության վերելքը խիստ հակադրության մեջ են կապիտալիստական աշխարհի աշխատավորների վիճակի և այնտեղ տիրող իրադրության նկատմամբ: Մեզ մոտ չկա տնտեսական ճգնաժամ, չկա գործազրկություն, ինֆլյացիա: Մենք վստահ ենք նայում ապագային:

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆՆԵՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՈՒՄԸ ԱՆԽԶԵԼԻՈՐԵՆ ԿԱՊՎԱԾ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՄԱՆ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԵՏ: Հանուն այդ ազնիվ և մարդասիրական նպատակի, որը համապատասխանում է ամբողջ մարդկության շահերին և իղձերին, մեր կուսակցությունն ու սովետական պետությունը անշեղորեն և հաստատակամորեն կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագիրը: Ամեն ինչ արվում է, որպեսզի սովետական մարդիկ կարողանան ապրել և աշխատել խաղաղ պայմաններում: Եղբայրական սոցիալիստական երկրների հետ համատեղ, ձեռնարկվել են մի շարք նոր միջոցառումներ՝ ուղղված միջազգային լարվածության հետագա թուլացմանը, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների իրավահավասար, փոխշահավետ համագործակցության ընդլայնմանը, իմպերիալիստական ագրեսիայի և ռեակցիայի դեմ, հանուն բոլոր ժողովուրդների կայուն խաղաղության և անվտանգության մղվող պայքարում բոլոր առաջադեմ, խաղաղասեր ուժերի համախմբմանը:

ՄԵՐ ԲՈԼՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԵՐՈՍԱԿԱՆ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ, ՓԱՌԱՊԱՆԾ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄՏԱՎՈՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՆԱՆՑ, ՄԵՐ ՀԻԱՆԱԼԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ, ՍՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՈԳԵՇՈՒՆՉ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԳԱՍԻՔՆ ԵՆ: Անցյալ տարի նոր թափ ստացած սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ առան բազմաթիվ արժեքավոր նախաձեռնություններ: Ընդլայնվեց շարժումը հանդիպական պլանների ստանձնման և կատարման համար:

Աշխատանքային արիության օրինակներ են ցույց տալիս իններորդ հնգամյակի հարվածայիններն ու առաջավոր կոլեկտիվները: Նրանք մեր ժողովրդի փառքն ու պարծանքն են և իրավամբ վայելում են ընդհանուրի պատիվն ու հարգանքը: Կուսակցությունը և պետությունը բարձր են գնահատում ու խրախուսում նրանց աշխատանքը: Շատ առաջավորներ ու նորարարներ արժանացել են հայրենիքի բարձր պարգևներին: Լավագույններից լավագույններին շնորհված է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում: Մի ձեռնարկությունում կատարած երկարամյա անբասիր աշխատանքի և արտադրական հաջողությունների համար բանվորներն ու կոլտնտեսականները պարգևատրվում են Աշխատանքային փառքի շքանշանով: Թո՛ղ իններորդ հնգամյակի հարվածայինների օրինակը աշխատանքային նոր սխրանքների ոգեշնչի միլիոնավոր սովետական մարդկանց:

ՄԵՐ ԲՈԼՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ, ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ, ԱՐՀՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԵՎ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԳԱՍԻՔՆ ԵՆ: ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների իրականացման պայքարում է՛լ ավելի ամրապնդվեց սովետական հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, ամրապնդվեց ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը: Սովետական մարդիկ լիովին հավանություն են տալիս և ակտիվորեն պաշտպանում կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած նրա քաղբյուրոյի բազմաբեղուն և նպատակասլաց գործունեությունը: Կուսակցության և ժողովրդի միասնությունը մեր ուժի աղբյուրն է, մեր բոլոր հաղթանակների հիմքը:

Թանկագին ընկերնե՛ր:

ՆՈՐ ՏԱՐԻՆ՝ 1975 ԹՎԱԿԱՆԸ, ԱՅՆ ՏԱՐԻՆ Է, ԵՐԲ ՄԵՆՔ ՊԵՏՔ Է ԱՎԱՐՏԵՆՔ ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ, որոնք նախատեսվել են ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից: Դրանով իսկ ամուր հիմք կստեղծվի հաջորդ՝ տասներորդ հնգամյակում հաջող աշխատանքի, կուսակցության երկարաժամկետ սոցիալ-տնտեսական քաղաքականության իրականացման համար: Սովետական մարդիկ ամեն ինչ կանեն այդ նպատակին հասնելու համար:

1975 ԹՎԱԿԱՆԸ ԱՅՆ ՏԱՐԻՆ Է, ԵՐԲ ՄԵՆՔ ՆՇԵԼՈՒ ԵՆՔ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ՏԱՐԱԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 30-ԱՄՅԱԿԸ, մի պատերազմ, որտեղ սովետական ժողովուրդը ցուցաբերեց մասսայական հերոսություն և արիություն, պաշտպանեց սոցիալիստական հայրենիքի պատիվը, ազատությունն ու անկախությունը, աշխարհի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից: Սովետական յուրաքանչյուր մարդու հայրենասիրական պարտքն է արժանավայել դիմավորել մեծ հաղթանակի հոբելյանը, այն նշանավորել աշխատանքային նոր նվաճումներով:



Ընթացիկ տարվա մեր խնդիրները սահմանվեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի կողմից: 1975 թվականի ժողովրդատնտեսական պլանի կատարումը նոր, խոշոր քայլ կնշանավորի երկրի տնտեսական հզորության հետագա ամրապնդման, ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի բոլոր ճյուղերի զարգացման, աշխատավորների բարեկեցության բարձրացման գործում: Այդ խնդիրների լուծումը տնտեսական, քաղաքական և միջազգային հսկայական նշանակություն ունի:

Արագ տեմպերով կզարգանա ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ, է՛լ ավելի կաճեն նրա մասշտաբները: Գործողների շարքը կմտնեն սև և գունավոր մետալուրգիայի, մեքենաշինության, քիմիայի և էներգետիկայի, ածխի, նավթի և գազի հանույթի, թեթև և սննդի արդյունաբերության հարյուրավոր նոր ձեռնարկություններ:

Կշարունակվի խոշոր-տերիտորիալ արտադրական կոմպլեքսների զարգացումը, ժողովրդատնտեսական բազմաթիվ կարևոր օբյեկտների կառուցումը, որոնց թվում են Կամայի ավտոմոբիլի գործարանը, Բայկալ-Ամուրյան երկաթուղային մայրուղին, Չեբոքսարիի արդյունաբերական տրակտորների գործարանը, Ուստ-Իլիմսկի անտառարդյունաբերական կոմպլեքսը, Լենինգրադի և Կուրսկի ատոմային էլեկտրակայանները, Նուրեկի և Սայանո-Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանները: Այս ամենը հնարավորություն կընձեռեն Սիբիրի, Հեռավոր Արևելքի և երկրի մյուս շրջանների վիթխարի հարստությունները առավել լրիվ ի սպաս դնելու ժողովրդին:

Նոր մակարդակի կբարձրանա ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ: Նախատեսվում է ավելացնել հացահատիկի և հողագործական ու անասնապահական մյուս մթերքների արտադրությունն ու մթերումները: Շատ բան պետք է արվի գյուղատնտեսական արտադրությունը հետևողականորեն ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու, դրա մասնագիտացման, համակենտրոնացման և միջտնտեսական կոոպերացման, լայն քիմիացման ու մելիորացման ասպարեզում: Աշխատանք կծավալվի ՌՍՖՍՀ ոչ-սևահողային գոտու գյուղատնտեսության զարգացման կոմպլեքսային ծրագրի իրականացման ուղղությամբ:

Կարևոր միջոցառումներ են նախատեսված ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ: Կավելանան աշխատավարձը, սպառման հասարակական ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնությունները, նախատեսված է մեծ ծավալներով շարունակել բնակարանային շինարարությունը, ինչպես նաև դպրոցների, հիվանդանոցների և կոմունալ-կենցաղային օբյեկտների կառուցումը: Կավելանան արդյունաբերական և պարենային ապրանքների արտադրությունն ու վաճառքը բնակչությանը: Կուսակցությունն այսուհետև ևս ամեն ինչ կանի սովետական մարդկանց կենսամակարդակը բարձրացնելու, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանները բարելավելու համար:

Ընկերնե՛ր:

1975 թվականի ժողովրդատնտեսական պլանում հաշվի են առնվում կուտակված փորձը և կյանքի առաջադրած նոր պրոբլեմները: Այդ պլանի առաջադրանքները լարված են, բայց մենք ամեն անհրաժեշտ բանն ունենք դրանց հաջող կատարման և գերակատարման համար: Մենք ունենք վիթխարի տնտեսական հզորություն, բանվորների, կոլտնտեսականների ու մասնագետների հիանալի կադրեր, գիտատեխնիկական մեծ պոտենցիալ, բնական հարուստ ռեսուրսներ:

Սակայն չի կարելի աչք փակել նաև եղած թերությունների հանդեպ: Այդպիսիք կան թե՛ ծանր ինդուստրիայում, թե՛ ժողովրդական սպառման առարկաների արտադրության, թե՛ շինարարության, թե՛ գյուղատնտեսության մեջ: Հաճախ ձգձգվում են արտադրական կարողությունների գործարկման ու յուրացման ժամկետները, առանձին ձեռնարկություններ չեն կատարում պլանները: Միշտ չէ, որ թողարկվող արտադրանքի որակն ու տեսականին համապատասխանում են ժամանակի պահանջներին:

Ինչպես մեր նվաճումների, այնպես էլ ծագող պրոբլեմների հանգամանալի և ինքնաքննադատական վերլուծությունը հետագա առաջընթացի անհրաժեշտ նախադրյալն է: Բանն այն է, որ ամենուրեք և հմտորեն օգտագործվեն մեր աճած հնարավորությունները, գործադրվեն ռեզերվները, վճռականորեն հաղթահարվեն թերությունները, բարելավվի ժողովրդական տնտեսության բոլոր օղակների աշխատանքը:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԲԱՆՎՈՐՆԵՐԻՆ, ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻՆ, ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԻՆ, ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՈՉ Է ԱՆՈՒՄ ՍՈՑԻԱԼԻՍ-

ՏԱԿԱՆ ԼԱՅՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ ԾԱՎԱԼԵԼ 1975 ԹՎԱԿԱՆԻ ՊԼԱՆԱՅԻՆ ԱՌԱՋԱԴՐԱՆՔՆԵՐԸ
ԿԱՏԱՐԵԼՈՒ ԵՎ ԳԵՐԱԿԱՏԱՐԵԼՈՒ, ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑ-
ՆԵԼՈՒ, ՀՆԳԱՄՅԱԿԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԱՎԱՐՏԵԼՈՒ ՀԱՄԱՐ: Մրցության նշանաբանը եղել
և մնում է՝ ՏԱԼ ԱՎԵԼԻ ՇԱՏ, ԱՎԵԼԻ ԼԱՎՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔ՝ ԱՎԵԼԻ ՊԱԿԱՍ ԾԱԽՍՈՒՄՆԵ-
ՐՈՎ: Հենց դա պետք է գտնվի սոցիալիստական մրցության մասնակիցների ուշադրության
կենտրոնում, որոշի յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվի, բոլոր գործարանների, ֆաբ-
րիկաների, ածխահանքերի, մետաղահանքերի և կառույցների, կոլտնտեսությունների և սով-
խոզների, տրանսպորտի և կապի ձեռնարկությունների, սպասարկման ոլորտի, գիտության ու
կուլտուրայի հաստատությունների աշխատանքի բովանդակությունն ու ռիթմը:

Արդի փուլում քանակական ցուցանիշների հետ մեկտեղ ավելի ու ավելի մեծ չափով ա-
ռաջին պլանի վրա են դրվում ԵՐԿՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՃԻ ՈՐԱԿԱԿԱՆ ՅՈՒՅԱՆԻՇՆԵՐԸ: Մեր
օրերի հրամայական պահանջն է՝ արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, նրա նվա-
ճումների, աշխատանքի, արտադրության կազմակերպման ու կառավարման առաջավոր մե-
թոդների արմատավորումը, ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազին-
ման պլանաչափ իրականացումը, արտադրանքի բարձր որակի համար մասսայական շարժման
զարգացումը: Որակի համար, արդյունավետության բարձրացման համար մղվող պայքարը պետք
է համակի մեր գործունեության բոլոր կողմերը:

Վճռական նշանակություն ունի ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՃԸ:
Բավական է ասել, որ աշխատանքի արտադրողականության միայն մեկ տոկոսով բարձրացու-
մը հնարավորություն կընձեռի արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացնելու
տարեկան գրեթե 5 մլրդ ռուբլով: Այս տարի արդյունաբերական արտադրանքի աճի 86 տոկո-
սը, գյուղատնտեսական արտադրության, շինարարության և տրանսպորտի աշխատանքների
ծավալի հիմնական աճը նախատեսված է ստանալ այդ գործոնի հաշվին: Աշխատանքի արտա-
դրողականության բարձրացմամբ մտահոգվելը յուրաքանչյուր սովետական մարդու, յուրաքան-
չյուր աշխատանքային կոլեկտիվի պատվի գործն է:

Սոցիալիստական տնտեսավարման անկապտելի հատկանիշը ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ
ՏՆՏԵՍՈՒՄՆ Է: Շատ կարևոր է խելացի, տնտեսվարորեն օգտագործել մեր նյութական, դրամա-
կան, բնական ռեսուրսները, յուրաքանչյուր աշխատավորի աշխատաժամանակը: Դրան կարելի
է հասնել, եթե միլիոնավոր բանվորներ, կոլտնտեսականներ, մասնագետներ, երկրի բոլոր աշ-
խատավորները հումքի, էլեկտրաէներգիայի և նյութերի խնայողությունը համարեն իրենց հա-
րազատ գործը: Թողարկվող արտադրանքի վրա կատարվող նյութական ծախսումների միայն
մեկ տոկոսով իջեցումը այժմ հավասարազոր է ազգային եկամուտը լրացուցիչ կերպով
գրեթե չորս միլիարդ ռուբլով ավելացնելուն: Սովետական յուրաքանչյուր մարդու պարտքն է
հաստատակամորեն պայքարել անտնտեսվարության և շռայլության դեմ, պահպանել սոցիա-
լիստական սեփականությունը, մեր հանրային հարստությունը:

Մեր երկրում ժողովրդի ջանքերով ստեղծված են հսկայական ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՖՈՆԴԵՐ:
Դրանց ռացիոնալ օգտագործումը, նոր գործարկված կարողությունների արագ յուրացումը,
սարքավորումների պարապուրդների նվազեցումը, տեխնիկայի, յուրաքանչյուր հաստոցի, մե-
քենայի նկատմամբ հոգատար վերաբերմունքը հսկայական տնտեսական արդյունք են տալիս:
Արդյունաբերության մեջ արտադրական ֆոնդերի մեկ ռուբլու ֆոնդահատույցի նույնիսկ մեկ
կոպեկով բարձրացումը կտա երեք միլիարդ ռուբլու խնայողություն:

ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀԱՋՈՂ ԱՎԱՐՏՄԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿՈԼԵԿ-
ՏԻՎՆԵՐԻ ԱՌՋԵՎ, ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ԱՌՋԵՎ ԿԱՆԳՆԱԾ ԵՆ ԿՈՆԿ-
ՐԵՏ ԽՆԴԻՐՆԵՐ: Եվ շատ կարևոր է, որ դրանք լուծվեն ժամանակին, բարեխղճորեն, գործիմա-
ցությամբ: Պետք է ձգտել այն բանին, որ ամեն մեկը աշխատի ջանասիրաբար, ստեղծագոր-
ծաբար, պահպանի աշխատանքային, պետական կարգապահությունը, բարձր պահանջկոտու-
թյուն ցուցաբերի իր և իր ընկերների նկատմամբ: Յուրաքանչյուր բրիգադա և արտադրամաս,
յուրաքանչյուր ձեռնարկություն և կառույց, յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ պետք
է աշխատեն ճշտությամբ ու հստակ, առավելագույն եռանդ ու հաստատակամություն գործա-
դրեն առաջադրանքները, հանդիպական պլանները, սոցիալիստական պարտավորությունները
կատարելու և գերակատարելու գործում: Դա է մեր ամբողջ աշխատանքի հաջողության անհրա-
ժեշտ պայմանը:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԴԻՄՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱ-
ՏԱՐ ՈՒԺԸ ԿԱԶՄՈՂ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻՆ, ՁԵԶ, ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ, ՇԻՆԱՐԱՐՈՒ-
ԹՅԱՆ, ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԵՎ ԿԱՊԻ ԱՇԽԱՏՈՂՆԵ՛Ր.

Ակտիվ պայքարեցե՛ք արտադրության ծավալի, անվանացուցակի և որակի վերաբեր-



յալ հնգամյակի եզրափակիչ տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար.
հասեք այն բանին, որ արդյունավետ օգտագործվեն աշխատաժամանակը, սարքավորումները,
խնայողաբար ծախսեցեք էլեկտրաէներգիան, վառելիքը, հումքը և նյութերը. ժամկետից շուտ
գործարկեք նոր օբյեկտները, ավելի արագ յուրացրեք արտադրական կարողությունները:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԴԻՄՈՒՄ Է ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆԸ,
ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԻՆ, ՁԵԶ, ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵ՛Ր.

Ավելացրե՛ք գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը.
բարձրացրե՛ք հացահատիկային կուլտուրաների, բամբակի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և
մյուս կուլտուրաների բերքատվությունն ու համախառն բերքը. բարձրացրե՛ք անասնապահու-
թյան մթերատվությունը, ավելացրե՛ք անասունների և թռչունների քանակը. արտադրե՛ք ավելի
շատ միս, կաթ, ձու և այլ մթերքներ. պայքարեք արտադրանքի որակի համար, հողի յուրաքան-
չյուր հեկտարի, յուրաքանչյուր տրակտորի և կոմբայնի, հանքային պարարտանյութերի յուրա-
քանչյուր տոննայի արդյունավետ օգտագործման համար:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԴԻՄՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄՏԱՎՈՐԱԿԱՆՈՒԹՅԱՆԸ,
ՁԵԶ, ԻՆԺԵՆԵՐՆԵ՛Ր ԵՎ ՏԵԽՆԻԿՆԵ՛Ր, ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԵՏՆԵ՛Ր, ԳԻՏՈՒ-
ԹՅԱՆ ՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԳՈՐԾԻՉՆԵ՛Ր, ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ
ԱՇԽԱՏՈՂՆԵ՛Ր.

Ջանքերն ուղղեք գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու. ամրապնդե՛ք գիտու-
թյան կապը արտադրության հետ. պրակտիկայում ավելի արագ արմատավորեք գիտության,
տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումները. ապահովե՛ք սովետական կուլտուրայի, ժողո-
վըրդական կրթության և առողջապահության հետագա ծաղկումը. ձեր ստեղծագործությամբ
մարդկանց ոգեշնչեք աշխատանքային նոր սխրանքների ու մեծագործությունների, այսուհետ
ևս եղեք կուսակցության հավատարիմ օգնականները, նոր մարդուն, մեր երիտասարդությանը
կոմունիզմի, սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով
դաստիարակելու գործում:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԴԻՄՈՒՄ Է ՁԵԶ, ԱՌԵՎՏՐԻ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՍՆՆԴԻ,
ԿԵՆՑԱՂԻ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԱԼ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵ՛Ր.

Զարգացրե՛ք և կատարելագործե՛ք կենցաղային ծառայությունների ոլորտը, արմատավո-
րե՛ք աշխատանքի առաջադիմական ձևերն ու մեթոդները, բարձրացրե՛ք սովետական մարդ-
կանց սպասարկման կուլտուրան:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԴԻՄՈՒՄ Է ՁԵԶ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՆԱՅՔ:

Ձեր անձնվեր աշխատանքով, ընտանիքի, երեխաների նկատմամբ ձեր մայրական հոգա-
տարությամբ դուք վաստակել եք ամբողջ հասարակության խորին երախտագիտությունն ու
հարգանքը: Նոր տարին՝ 1975 թվականը, ամբողջ մոլորակում նշվում է որպես կանանց տարի:
Ե՛լ ավելի ակտիվ մասնակցեք հասարակական կյանքին, հայրենիքի բարօրության համար կա-
տարվող ստեղծարար աշխատանքին:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԴԻՄՈՒՄ Է ՁԵԶ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ՊԱՏԱՆԻՆԵ՛Ր
ԵՎ ԱՂՋԻԿՆԵ՛Ր.

Եղե՛ք ավագ սերունդների արժանի փոխարինողները, նրանց հերոսական գործերի և ա-
վանդույթների շարունակողները: Հաստատակամորեն ու համառորեն տիրապետեք գիտելիք-
ներին, հնգամյակի եզրափակիչ տարին նշանավորեք հարվածային աշխատանքով. արժանի
ավանդ մուծեք կոմունիստական շինարարության պլանների հաջող կատարման համաժողո-
վըրդական պայքարում:

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ, ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ, ՏՆՏԵՍԱԿԱՆ, ԱՐՀ-
ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ, ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ԿՈՉ Է ԱՆՈՒՄ.

Մշտապես բարելավել մասսաների մեջ կատարվող աշխատանքը, կատարելագործել սոցիա-
լիստական մրցության կազմակերպումը, տնտեսության ղեկավարման մեթոդները, բարձրացնել
բոլոր աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի համար: Հարկավոր է

հետևողականորեն հաստատել աշխատանքի լենինյան ոճը տնտեսական և պետական ապարատի բոլոր օղակներում, վճռականորեն հանդես գալ գերատեսչականության, տեղայնության և անպատասխանատվության դեմ, զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, համարձակորեն բացահայտել թերությունները, վերացնել այն ամենը, ինչ խանգարում է հաջող աշխատանքին:

ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՐՏՔՆ Է՝ գլխավորել մրցությունը, լինել նրա ոգեշնչող ու կազմակերպող ուժը, բարձր գիտակցականության և ստեղծագործական ակտիվության օրինակ ցույց տալ արտադրական և հասարակական կյանքում: Նրանք կոչված են այսուհետ ևս ակտիվորեն կատարելու աշխատանքային կոլեկտիվների ավանգարդի դերը իններորդ հնգամյակի արժանավայել եզրափակման պայքարում:

Ընկերնե՛ր:

Տարեցտարի մեր երկիրն ավելի հարստանում և ուժեղանում է, բարելավվում է ժողովրդի կյանքը: Ապագայի, մեծ Լենինի կողմից մեզ ավանդված պատմական գործի ճշմարտացիության նկատմամբ խորին հավատով ենք մենք առաջ ընթանում դեպի նախատեսված նպատակը՝ կոմունիզմը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ մեր կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովուրդը հնգամյակի եզրափակիչ տարում ևս կաշխատեն ստեղծագործական անսպառ եռանդով, կցուցաբերեն բարձր կազմակերպվածություն և նոր նշանավոր հաղթանակներ ձեռք կբերեն կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում:

ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԸ՝ ՀԱՆՈՒՆ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀԱՋՈՂ ԱՎԱՐՏՄԱՆ, ՀԱՆՈՒՆ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԱՋԱԴՐԱԾ ՀՈՅԱԿԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ:

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

# ԴԵՊԻ ՆՈՐԱՆՈՐ ՍԽՐԱՆՔՆԵՐ

Կուսակցությանն ու սովետական ժողովրդին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ուղղած նոր Դիմումը մեր երկրի աշխատավորներն ընդունեցին որպես գործողության մարտական ծրագիր: Հանրագումարի բերելով հնգամյակի անցած չորս տարվա արդյունքները, ՍՄԿԿ Կենտկոմը հստակորեն նշում է այն վճիռարի խնդիրները, որոնք հնգամյակի ավարտական տարում պետք է կենսագործեն մեր երկրի բանվոր դասակարգը, գյուղացիությունը և մտավորականությունը: Կուսակցությունը սովետական բոլոր մարդկանց կոչ է անում սոցիալիստական լայն մրցություն ծավալել 1975 թվականի պլանային առաջադրանքները կատարելու և գերակատարելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, հնգամյակը հաջողությամբ ավարտելու համար:

Սովետական ժողովրդի համար տասնյակ տարիների ավանդույթ է՝ հերոսական գործերով, ստեղծագործական ակտիվությամբ արձագանքել հարազատ կոմունիստական կուսակցության կոչերին, կոմունիզմի կառուցման լենինյան կանխագծումների իրականացմանը ի սպաս դնել իր եռանդն ու ջանքերը: Անցյալ տարվա սկզբից երկրով մեկ լայնորեն ծավալվեց սոցիալիստական մրցության ալիքը. տասնյակ միլիոնավոր բանվորներ, գյուղացիներ և մտավորականներ պայքարի ելան՝ աշխատանքային սխրանքներով, հերոսական գործերով նոր առաջընթաց ապահովելու կոմունիստական շինարարության ճանապարհին, մի նոր ոսկե էջ գրելու աշխարհում առաջին սոցիալիստական պետության տարեգրության մեջ:

Գոհացուցիչ են իններորդ հնգամյակի որոշիչ տարվա արդյունքները: 1974 թվականը նշանավորվեց ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կատարման գործում սովետական ժողովրդի ձեռք բերած ակնբախ նվաճումներով՝ էկոնոմիկայի վերընթացի, գիտության ու կուլտուրայի ծաղկման, մեր երկրի աշխատավորների կենսամակարդակի բարձրացման ասպարեզում: Դրանք մեծ նշանակություն կունենան ո՛չ միայն ընթացիկ հնգամյակի եզրափակիչ տարվա պլանները հաջողությամբ կատարելու, այլև վճռական ազդակ՝ առաջիկա հնգամյակում երկրի տնտեսական պոտենցիալի հետագա աճի ու սովետական ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի առավել բարձրացման համար:

Մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն, նրա քաղբյուրոն, անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը հետևողականորեն վարում են կուսակցության XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի իրականացման կուրսը: Իր խաղաղասիրական ակտիվ քաղաքականությունը մեր կուսկցությունն իրականացնում է՝ սերտորեն համագործակցելով սոցիալիստական երկրների, եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ: Մեր երկրի խաղաղասիրական քաղաքականությունը բարերար է ներգործում աշխարհի քաղաքական մթնոլորտի վրա: Այդ կուրսին լիովին հավանություն են տալիս ո՛չ միայն սոցիալիստական սիստեմի բոլոր երկրների աշխատավորները, այլև ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, որը տեղի ունեցավ 1974 թվականի դեկտեմ-

բերին, լսեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկեր Ն. Կ. Բայբակովի՝ «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1975 թ. պետական պլանի մասին» ու ՍՍՀՄ ֆինանսների մինիստր ընկեր Վ. Ֆ. Գարբուզովի՝ «ՍՍՀՄ 1975 թ. պետական բյուջեի մասին» զեկուցումները և հիմնականում հավանություն տվեց դրանց։ Կենտկոմի պլենումում ընդարձակ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը։ Իր ճառում նա ամենայն խորությամբ վերլուծեց իններորդ հնգամյա պլանի կատարման արդյունքները և նշեց առաջիկա հնգամյակում մեր երկրի էկոնոմիկայի զարգացման հեռանկարային կարևորագույն խնդիրները։

Պլենումը կուսակցական կոմիտեներին ու կազմակերպություններին, մինիստրություններին և սովետական, տնտեսական ու արհմիութենական բոլոր կազմակերպություններին պարտավորեցրեց մշակել և կիրառել այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովեն ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1975 թվականի պետական պլանի և իններորդ հնգամյակի բոլոր առաջադրանքների կատարումը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումին հաջորդեց ՍՍՀՄ Գերագույն սովետի իններորդ գումարման երկրորդ սեսիան, որը քննարկեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1975 թվականի պետական պլանը և պետական բյուջեն։ Ինչպես զեկուցումներում, այնպես էլ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների ելույթներում նշվեցին այն նվաճումները, որ ձեռք են բերվել իններորդ հնգամյակի անցած չորս տարիներին, մասնավորապես 1974 թվականին։ Անցած չորս տարիների գլխավոր քաղաքական արդյունքն այն է, որ ապահովվեց ամբողջ ժողովրդական տնտեսության դինամիկ զարգացումը, և մեծ առաջընթաց կատարվեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Գոհացուցիչ են որոշիչ տարվա ամփոփիչ ցուցանիշները, որոնք սովետական մարդկանց օրինական հպարտությունն են հարուցում։

Անցյալ տարի ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալն աճեց 8 տոկոսով, տարեկան առաջադրանքով նախատեսված 6,8-ի դիմաց։ Պլանից ավելի թողարկվել է մոտավորապես 6 մլրդ ռուբլու արտադրանք։ Իններորդ հնգամյակի չորս տարում արդյունաբերության արտադրանքի աճը կազմել է 121 մլրդ ռուբլի, կամ ավելի քան 33 տոկոս։ Այդ ժամանակաշրջանում իրագործվել է շինարարության մեծ ծրագիր։ Ֆինանսական բոլոր աղբյուրներով ժողովրդական տնտեսության մեջ 387 մլրդ ռուբլու կապիտալ ներդրումներ են կատարվել։ Չորս տարում կառուցվեցին 1,7 հազար պետական արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ և բազմաթիվ արտադրամասեր ու արտադրություններ՝ գործող ձեռնարկություններում։ Դրանցից են Կրասնոյարսկի՝ աշխարհի ամենահզոր հիդրոէլեկտրակայանը, Տոլյատիի ավտոգործարանը։ Կառուցվում է ավելի քան երեք հազար կիլոմետր երկարություն ունեցող Բայկալ—Ամուր մագիստրալային երկաթուղին։ Արդյունաբերության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումներն արմատավորելու, արտադրության ու աշխատանքի կառավարումը կատարելագործելու շնորհիվ մեծացել է էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների դերը։ Բավական է ասել, որ միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին հնգամյակի անցած չորս տարիներին ստացվել է արդյունաբերական արտադրանքի 84 տոկոսի աճ՝ ութերորդ հնգամյակի 73 տոկոսի դիմաց։ Արդյունաբերական արտադրանքի այսպիսի աճի վրա բարերար ազդեցություն է գործել աշխատավորական կոլեկտիվների կողմից հանդիպական պլաններ ստանձնելու տարածված պրակտիկան, պլաններ, որոնցում առավել լրիվ են իրայնանում եղած ռեզերվները։

Կոմունիստական կուսակցությունն իր լենինյան ագրարային քաղաքականությամբ նպաստավոր պայմաններ է ստեղծում հանրային գյուղատնտեսության հետագա առաջընթացի համար։ Գործադրվում են տնտեսական այնպիսի լծակներ, որոնք նպաստում են աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանը։ Այժմ ծավալուն աշխատանքներ են տարվում գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման նպատակով։



Այս բոլորի շնորհիվ ապահովվում է ցանքատարածությունների բարձր բերքատվությունը, աճում է անասնապահական մթերքների արտադրությունը։

Գյուղի մարդկանց եռանդուն և անձնվեր աշխատանքի շնորհիվ անցյալ տարի, չնայած բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, հացահատիկի համախառն բերքը Սովետական Միությունում կազմեց 195,5 մլն տոննա։ Ճիշտ է, այն որոշ չափով պակաս է նախորդ՝ մեր երկրի ամենաբերքառատ տարվանից, բայց անցյալ բոլոր տարիներից ավելի բարձր է։ Հավաքված ու մթերված է 8,4 մլն տոննա բամբակ, որը ռեկորդային բերք է և զգալիորեն գերազանցում է պետական առաջադրանքը։ Չորս տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքը, ութերորդ հնգամյակի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է ավելի քան 15 տոկոսով։ 1974 թվականին հաջողությամբ կատարվեց անասնապահական մթերքների գնման առաջադրանքը։

ՍՍՀՄ ժողովուրդների հզոր, միաձույլ և համերաշխ ընտանիքում եղբայրական բոլոր հանրապետություններին համաքայլ է ընթանում Սովետական Հայաստանը։ Հաստատակամ բռնելով ՍՄԿԿ XXIV համագումարի նշած ուղին, մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, մեր հանրապետության աշխատավորները հերոսաբար են պայքարում հանուն իններորդ հնգամյակի պլանի կենսագործման։ Բնորոշ է, որ անցյալ տարի ապահովվեցին էկոնոմիկայի զարգացման ամենաբարձր տեմպերը ընթացիկ հնգամյակում։ Ազգային եկամտի աճը կազմեց 8,8 տոկոս։ Հանրապետությունում ռեալ հնարավորություն ստեղծվեց՝ 1974 թվականին հասնելու արդյունաբերական արտադրանքի ծավալի՝ հնգամյա պլանով նախատեսված աճի տեմպին։ Տարեկան և հանդիպական պլանների, սոցիալիստական պարտավորությունների գերակատարման հաշվին ժողովրդական տնտեսությունը լրացուցիչ ստացել է 75 մլն ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ աճել է 6,8, շինարարությունում՝ 9,4, գյուղատնտեսության մեջ՝ 10,8 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի 67 տոկոսն ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ։

Մեր հանրապետությունում նկատելիորեն ընդլայնվեցին կապիտալ շինարարության մասշտաբները։ Միայն անցած տարի գործարկվեցին մեքենաշինության, թեթև, սննդի, փայտամշակման, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության և մի շարք այլ ճյուղերի տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ, էներգետիկ, տրանսպորտային և ճանապարհային շինարարության խոշոր կարողություններ, գյուղատնտեսական նոր կոմպլեքսներ։ Հիմնական ֆոնդերի գործարկումը, 1973 թվականի համեմատությամբ, աճեց 10,7 տոկոսով։ Հնգամյակի անցած չորս տարում կառուցվել են 4 մլն 669 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Անցյալ տարի որոշակի հաջողությունների հասան Հայաստանի գյուղի աշխատավորները։ Պետությանը վաճառվող գյուղատնտեսական հիմնական մթերքների առաջադրանքները կատարվեցին, իսկ միսը, կաթը, շաքարի ճակնդեղը, կարտոֆիլը և բանջարեղենը՝ զգալիորեն գերակատարվեցին։

Հնգամյակի որոշիչ տարում իրենց ստեղծագործական նախաձեռնությամբ աչքի ընկան մեր հանրապետության հազարավոր աշխատողներ։ Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի փականագործ, կոմունիստ Հովհաննես Մարկոսյանն ավարտեց իր հնգամյա պլանը և այժմ աշխատում է տասներորդ հնգամյակի հաշվին։ Թումանյանի շրջանի Սանահինի լոկոմոտիվային դեպոյի մեքենավար, կոմունիստ Վոլոդյա Սեդրակյանը խոստացել էր 1974 թվականին փոխադրել 150 հազար տոննա բեռ, խնայել 25 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Բեռների փոխադրման պարտավորությունը նա կատարեց նոյեմբերին, տնտեսելով ավելի քան 32 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Արտաշատի շրջանի Վերին Դվինի կոլտնտեսության բրիգադավար Սաշա Մխիթարյանը, իր վերցրած սոցիալիստական պարտավորությունից շատ ու շատ առաջ անցնելով, հեկտարից ստացավ 910 ցենտներ պոմիդոր, 151 ցենտներ խաղող, 340 ցենտներ սոխ։ Յուրաքանչյուր հեկտարից պարտավորված 315 ցենտների դիմաց միջին հաշվով նա ստացավ 660 ցենտներ բանջարեղեն։ Երևանի գեղարվեստական ժամացույցների գործարանի բանվորուհի, կոմունիստ

էմմա Հակոբյանը տարեկան պլանը կատարեց 11 ամսում։ «Քաջարանշին» տրեստից սոցիալիստական աշխատանքի հերոս Գառնիկ Մանասյանի ղեկավարած տնտհաշվարկային բրիգադն անցյալ տարի ավարտեց շինմոնտաժային աշխատանքների հնգամյա պլանը, այժմ աշխատում է գալիք հնգամյակի հաշվին։ Կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը միշտ էլ բարձր են գնահատում այն մարդկանց, ովքեր իրենց հերոսական աշխատանքով բազմապատկում են մեր հայրենիքի հարստությունը։

Հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ է կատարում Երևանի ալյումինի գործարանը։ Սոցիալիստական մրցության մեջ առաջնությունը նվաճելու համար ձեռնարկությունն անցած տարվա առաջին երեք եռամսյակներին շահել է ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի և մետալուրգիական արդյունաբերության արհմիութենական կենտկոմի մրցանակը։ Իջևանի գորգագործական կոմբինատն արդեն կատարել է հնգամյա պլանը և արտադրանք է տալիս եկող հնգամյակի հաշվին։ Պլանները հաջողությամբ է կատարում Երևանի մսի կոմբինատը։ Ուրախալի են հաջողությունները Հոկտեմբերյանի շրջանի Հուշակերտ և Նալբանդյան գյուղերի կոլտնտեսությունների, որոնք կատարում են բերքատվության բարձրացման, անասունների մթերատվության ավելացման առաջադրանքներն ու պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու պլանները։

Ներկա ժամանակաշրջանի պատմական նշանակություն ունեցող առանձնահատկությունը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, այն է, որ մեր երկրի էկոնոմիկան շրջադարձ է կատարում դեպի ժողովրդի բարեկեցության բարձրացման հետ կապված բազմատեսակ հարցերի լուծումը։ Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ 1974 թվականի հունիսի 14-ին ունեցած հանդիպման ժամանակ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Միլիոնների համառ, հերոսական աշխատանքով մեզանում ստեղծվել է զարգացած, հասուն սոցիալիստական հասարակարգ։ Եվ հիմա, իհարկե, մենք հարկ ունենք զգալի միջոցներ հատկացնել երկրի տնտեսական պոտենցիալի ավելի արագ զարգացմանը, նրա պաշտպանունակության ամրապնդմանը։ Բայց մեր ռեսուրսներն անչափ մեծացել են, և դա հնարավորություն է տալիս անելու այն, ինչին մենք միշտ ձգտել ենք՝ սովետական մարդկանց բարեկեցության բարձրացումը պահելու կուսակցության գործնական քաղաքականության կենտրոնում»։

Միայն անցյալ տարի Սովետական Միությունում բնակչության ռեալ եկամուտներն աճեցին 4,2 տոկոսով։ Իսկ հնգամյակի չորս տարիներին բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձն ավելացել է 15, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ ավելի քան 22 տոկոսով։ 1974 թվականին 11 մլն մարդ բարելավել են իրենց բնակարանային պայմանները։ Այս ասպարեզում որոշակի գործ է կատարված նաև մեր հանրապետությունում։ Տարեցտարի բարձրանում է բանվորների և ծառայողների աշխատավարձը, աճում կոլտնտեսականների վարձատրության չափը։ Ամեն տարի աճում է մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը։ Նկատելիորեն ավելացել է այնպիսի մթերքների վաճառքը բնակչությանը, ինչպիսիք են՝ միսը, կաթնամթերքները, ձուն։ Ներքին ռեզերվների և եղած հնարավորությունների օգտագործման շնորհիվ 1974 թվականին պլանից ավելի թողարկվել են 46 մլն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ։

Հնգամյակի անցած չորս տարում ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, բնակչության կենսամակարդակի բարձրացման ասպարեզում սովետական մարդկանց նվաճումները հաստատուն նախադրյալներ են ստեղծել այս տարվա մեր առջև ծառացած խնդիրները հաջող լուծելու համար։ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) պլենումն ու ՍՍՀՄ Գերագույն սովետի իններորդ գումարման երկրորդ սեսիան նշեցին այն բնագծերը, որոնք պետք է նվաճվեն հնգամյակի ավարտական տարում։ Սովետական Միության ժողովրդական տնտեսության մեջ ֆինանսավորման բոլոր աղբյուրներով կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը սահմանված է 113 մլրդ ռուբլի, որը 7,3 տոկոսով ավելի է անցյալ տարվա համեմատու-



թյամբ։ Ընդհանուր առմամբ արդյունաբերական արտադրանքը կավելանա 6,7 տոկոսով։ Ժողովրդական տնտեսության պահանջին համապատասխան կարտադրվի 1.035 մլրդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 489,4 մլն տոննա նավթ, 700 մլն տոննա քարածուխ, ավելի քան 142 մլն տոննա պողպատ։ Այս ցուցանիշները կհամապատասխանեն ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների առաջադրանքների մակարդակին։ Մեծ միջոցներ են հատկացվելու մեքենաշինությանը՝ ծանր արդյունաբերության առաջատար ճյուղի զարգացմանը, որն ապահովում է ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացը։ 1975 թ. պլանում նախատեսված են կոմպլեքսային միջոցառումներ՝ ժողովրդական սպառման ապրանքների թողարկման հետագա զարգացման համար։ Ընդ որում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվելու ապրանքների տեսականու հետագա ընդլայնմանը և դրանց որակի բարձրացմանը։

Ընթացիկ տարում մեծ միջոցներ են հատկացվելու երկրի գյուղատնտեսության զարգացմանը, որի շնորհիվ նրա համախառն արտադրանքը կանցնի 100 մլրդ ռուբլուց։ Բյուջեի և մյուս աղբյուրների հաշվին գյուղատնտեսության ֆինանսավորմանը կհատկացվի 37,1 մլրդ ռուբլի, կամ 7,8 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։ Ողջ հնգամյակում գյուղատնտեսական մթերքների տարեկան միջին արտադրությունը, անցյալ հնգամյակի համեմատությամբ, կավելանա 16,5 տոկոսով։ Զգալի միջոցներ են հատկացվելու կոլտնտեսություններում ու սովխոզներում անասնապահական շենքերի կառուցմանը, անասնապահության աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանը։ Գյուղին կմատակարարվի 72,4 մլն տոննա հանքային պարարտանյութ, կոռոգվի մոտ մեկ մլն հեկտար հող։

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներին համապատասխան, ընթացիկ տարում խոշոր միջոցներ են հատկացվելու սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացմանը։ Բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը կավելանա 2,7 տոկոսով և կանցնի 144 ռուբլուց։ Կոլտնտեսականների աշխատանքի ամսական միջին վարձատրությունը կաճի 5 տոկոսով և կանցնի 96 ռուբլուց։ Ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կկառուցվեն ավելի քան 107 մլն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ։

Հնգամյակի ավարտական տարվա պլանը ճոխ ու հարուստ է նաև Հայաստանում։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը, անցած տարվա համեմատությամբ, կավելանա 7,2 տոկոսով։ Կարտադրվի 9 մլրդ 110 մլն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը 1,5 անգամ ավելի է, քան արտադրվել է 1970 թվականին։ Ձուլված պղնձի արտադրությունը կաճի 5,8, իսկ ալյումինի գլանվածքինը՝ 13,3 տոկոսով։ Մեծ աշխատանքներ են կատարվելու մեքենաշինության զարգացման մարզում։ Առավելապես արագ տեմպերով են զարգանալու ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը, սարքաշինությունը։ Հաշվի առնելով ժողովրդական տնտեսության աճը, նախատեսված է բոլոր տեսակի տրանսպորտային միջոցների բեռնաշրջանառությունն ավելացնել 9,2, ուղևորների փոխադրումները՝ 13,8 տոկոսով։

Զգալի միջոցներ կհատկացվեն գյուղատնտեսության զարգացմանը, որի շնորհիվ բուսաբուծության արտադրանքը կաճի 14,4, իսկ անասնապահությանը՝ 7,9 տոկոսով։ Ընթացիկ տարում ևս կոռոգվի ավելի քան 9, կջրարբիացվի 30 հազար հեկտար տարածություն։ Ընդհանուր առմամբ ջրովի հողերի տարածությունը կհասնի 300 հազար հեկտարի, որը հնարավորություն կտա տեխնիկական, բանջարաբոստանային համարյա բոլոր կուլտուրաների, հացահատիկային կուլտուրաների մեկ երրորդը, կարտոֆիլի կեսից ավելին աճեցնել ոռոգելի տարածություններում։

Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացմանը ընթացիկ տարում հատկացվելու է ավելի քան մեկ մլրդ 45 մլն ռուբլի, որը 130,6 մլն ռուբլով կգերազանցի անցյալ տարվա կապիտալ ներդրումների ծավալը։ Խոշոր միջոցներ կհատկացվեն բնակչության կենսամակարդակի բարձրացմանը, բնակարանային շինարարությանը, սոցիալական ապահովությանը, կրթական ու առողջապահական մարմիններին։ Արագացվելու է էներգետիկայի, սարքա-

ծուլթյան ու գոռոզամտության, ազգային սահմանափակության, նույնիսկ եզակի երևույթների դեմ, աշխատավորական լայն զանգվածների հոգում արմատավորել սովետական ապրելակերպի սկզբունքները, սովետական մարդու ազնիվ հատկությունները: Միաժամանակ պետք է անողոք խարազանել գործալիքներին, պորտաբույծներին, կաշառակերներին, դրամաշորթներին: Անհրաժեշտ է բոլոր աշխատանքային կոլեկտիվներում ստեղծել սոցիալիստական կոլեկտիվիզմի և ընկերականության մթնոլորտ, որը հաստատում է փոխադարձ օգնության ոգին՝ ուժերը հնգամյակի առաջադրանքների համար մոբիլիզացնելու գործում: Ամեն մի կոմունիստի սրբազան պարտքն է խստորեն պահպանել կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահությունը, անձնական օրինակով նպաստել մասսաների շրջանում սոցիալիստական մրցության ծավալմանը, այն ուղղել հանդիպական պլանների և ստանձնած պարտավորությունների անթերի կատարմանը: Կուսակցության, պետության ու ժողովրդի շահերը ամեն ինչից բարձր— այս է մեր սկզբունքը:

Թևակոխել ենք իններորդ հնգամյակի եզրափակիչ տարին, որին կհաջորդի տասներորդ, հոբելյանական հնգամյակը: Այն մշակվում է 1976—1990 թվականների հեռանկարային պլանների հետ մեկտեղ և հանդիսանալու է վերջինիս բաղկացուցիչ մասը: Ծրագրային մեծ նշանակություն ունեցող այդ փաստաթուղթը, որը կքննարկվի ՍՄԿԿ XXV համագումարում, կարտացոլի կոմունիստական շինարարության արդի փուլի հիմնական պրոբլեմները: Նոր հնգամյա պլանը մեծ հնարավորություններ կստեղծի երկրի սոցիալ-տնտեսական կարևորագույն խնդիրների լուծման համար: Մեր հանրապետության աշխատավորներն իրենց ողջ եռանդն ու ջանքերը կգործադրեն՝ լավագույն ցուցանիշներով դիմավորելու ՍՄԿԿ XXV համագումարը:

Ինչպես ողջ սովետական ժողովուրդը, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները ջերմորեն ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի, ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի որոշումները, որոնք նոր, փայլուն հեռանկարներ են բացում մեր երկրի առաջընթացի համար: Հայաստանի կոմկուսի քաղաքային ու շրջանային կոմիտեների, հանրապետության տնտեսական ու պլանային մարմինների առաջնահերթ խնդիրն է՝ քաղաքական, կազմակերպչական ու տնտեսական ամբողջ աշխատանքը նպատակամղել ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումների կատարմանը, աշխատավորների ստեղծագործական եռանդի ու նախաձեռնության, մասսայական սոցիալիստական մրցության ծավալմանը: Մեր հանրապետության 1975 թվականի պլանային առաջադրանքները, չնայած դրանց լարվածությանը, պետք է դիտել որպես նվազագույնը և ակտիվ պայքարել դրանց գերակատարման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ 1975 թվականին ժողովրդատնտեսական պլանը հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին որոշումը լայն արձագանք է գտել մեր հանրապետությունում: Ամենուրեք աշխատավորական կոլեկտիվները հանդիպական պլաններ են ընդունում այս տարվա և ընդհանրապես իններորդ հնգամյա պլանը անթերի կատարելու համար: Նրանք իրենց ուժերը կմոբիլիզացնեն՝ կատարելու նոր, փառավոր մեծագործություններ՝ հանուն կոմունիզմի հաղթանակի:

---



# ՍՍՀՄ-ՈՒՄ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՓՈՐՁԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Վ. ՇՉԵՐԲԻՑԿԻ**
ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար

Երկու տարի առաջ, հանրագումարի բերելով ՍՍՀ Միության կեսդարյա պատմության արդյունքները, ՍՄԿԿ-ն լիակատար հիմունքով հայտարարեց, որ ազգային հարցը մեր երկրում այնպես, ինչպես մեզ այն հասել է անցյալից, լուծված է, և դրա լուծումը իրավամբ սովետական ժողովրդի անվիճելի նվաճումներից է:

Ազգային հարցի վերաբերյալ կոմունիստական կուսակցության տեսության, ծրագրի ու քաղաքականության մշակման գործում պատմական մեծ ծառայությունը կատարել է Վ. Ի. Լենինը: Նա եղավ բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին բազմազգ պետության ստեղծողը: ՍՄԿԿ-ն ստեղծագործորեն զարգացրեց լենինյան ժառանգությունը և այն կենսագործեց սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման պրակտիկայում: Կուսակցության XXIV համագումարի նյութերը, «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը գիտական կոմունիզմի նշանավոր փաստաթղթեր են, որոնք հարստացնում են ազգային հարցի մարքս-լենինյան տեսությունը: Դրանց մեջ տրված է հասուն սոցիալիզմի պայմաններում ազգային հարաբերությունների զարգացման օրինաչափությունների խոր վերլուծությունը, առաջ են քաշված տեսական կարևոր դրույթներ մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ծագման մասին, սոցիալիստական ազգերի և ազգությունների զարգացման ու մերձեցման դիալեկտիկական փոխադարձ կապի մասին: Մեր երկրում ազգային հարցի լուծման և ազգամիջյան հարաբերությունների սկզբունքորեն նոր սիստեմի ձևավորման փորձը, ՍՄԿԿ-ի արդի գործունեությունը այդ բնագավառում իրավամբ ընդհանուր ուշադրության են արժանանում: Սովետական բազմազգ պետության կառուցման տեսությունն ու պրակտիկան բոլոր ժողովուրդների շահերին ու իղձերին համապատասխան ուղղությամբ ազգային հարաբերությունների վերափոխման գաղափարների ձևերի ու մեթոդների մի անսպառ զինանոց են:

## ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊՐՈԲԼԵՄԸ

Բոլորի կողմից ընդունված է, որ ազգային հարաբերությունները արդի աշխարհում աչքի են ընկնում բարդությամբ և բազմազանությամբ: «Սա համաշխարհային հարց է, առանց չափազանցության համաշխարհային»,— գրում էր Վ. Ի. Լենինը (ПСС, Т. 53, стр. 190): Ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման առաջընթացը վերջին տասնամյակներին անառարկելի

է: Երկրագնդի հսկայական մասում՝ սոցիալիստական համագործակցության մեջ հաստատվել են ազգային և միջպետական սկզբունքորեն նոր փոխհարաբերություններ, որոնք մոտեցնում են մարդկային համակեցության բարձրագույն ձևերի համընդհանուր հաստատման հեռանկարը: Խորտակվել է իմպերիալիզմի գաղութային սիստեմը: Պատմական ասպարեզ ելան ազգային անկախություն նվաճած տասնյակ պետություններ: Պորտուգալիայի ֆաշիստական ռեժիմի կործանման հետ հնչում է գաղութային վերջին կայսրության վերջին ժամը:

Բայց նույնքան և ակնհայտ է ազգային հարցի լուծման անավարտությունը: Դրա սրությունը դրսևորվում է միջպետական ընդհարումներում, առանձին երկրների ու ժողովուրդների, ազգային խմբերի կյանքում: Իմպերիալիստական պետությունները փորձում են պահպանել գաղութային տիրապետությունների մնացորդները, ազատագրված ժողովուրդներին պարտադրել շահագործման նոր ձևեր, դիմում են կողոպուտի նեոգաղութատիրական մեթոդների: Գաղութատիրության թողած ժառանգությունն առանձնապես ծանր է արտահայտվում աֆրիկյան և ասիական մայրցամաքներում: Պատմական անախրոնիզմ և միջազգային առաջադեմ հասարակայնությանը նետված մի մարտահրավեր է ռասայական ռեժիմների գոյությունը Ռոդեզիայում և Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում: Մերձավոր Արևելքում պահպանվում է լարվածության վտանգավոր օջախը, որը գոյացել է հարևան երկրների դեմ Իսրայելի ագրեսիայի և Պաղեստինի արաբ ժողովրդի ազգային իրավունքները չճանաչելու սիոնիստական քաղաքականության հետևանքով: Առաջվա նման դեռևս սուր է ռասայական-ազգային փոքրամասնությունների պրոբլեմը կապիտալիստական աշխարհի միջնաբերդում՝ ԱՄՆ-ում: Պարբերաբար սրվում է ֆրանս-կանադական բնակչության վաղեմի պրոբլեմը Կանադայում: Ասենք Արևմտյան Եվրոպայում ևս, որտեղ ավելի քան հարյուր տարի առաջ հիմնականում ավարտվել էր ազգային պետությունների ստեղծման պրոցեսը, ազգային կոնֆլիկտներն անցյալի գիրկը չեն անցել: Բավական է հիշեցնել Օլստերի ողբերգությունը, ֆլամանդական և վալլոնական համայնքների լարվածությունը Բելգիայում, ֆրանկոյական ռեժիմի կողմից ազգային իրավունքների ճնշումը Բասկերի երկրում, Կատալոնիայում, Գալիսիայում:

Այս երևույթների պատճառները ոչ թե մշտապես մարդուն հատուկ ռասայական-ազգային ինչ-որ գերազանցության կամ ոչ լիարժեքության զգացումն է, որի մասին անընդհատ խոսում են բուրժուական գաղափարախոսները, այլ ժամանակակից կապիտալիզմի բնությունը: Բուրժուական մի շարք պետությունների սահմանադրություններում հռչակվող ազգային իրավահավասարությունը զուրկ է քիչ թե շատ հաստատուն երաշխիքներից և խախտվում է ամեն քայլափոխին: Ինչպես ժամանակին Վ. Ի. Լենինն է նշել, թեև դասակարգային հակամարտությունը բուրժուական երկրներում հետին պլան է մղել ազգային հարցերը, միշտ էլ հնարավոր է դրանց հայտնվելը «քաղաքական դրամայի նախաբեմում» (տե՛ս Երկեր, հ. 6, էջ 586):

Ազգային թշնամանքի և լարվածության դրսևորումները մեծ մասամբ կապված են մոնոպոլիստական բուրժուազիայի քաղաքականության հետ, որը հաճախ դիտավորյալ է բորբոքում այդ թշնամանքը, այն օգտագործելով իր դասակարգային, հակաժողովրդական նպատակները քողարկելու և դրանց հասնելու համար: Հայտնի է, օրինակ, որ իմպերիալիստական որոշ շրջաններ տարիներ շարունակ ամեն կերպ լարվածություն էին հրահրում Կիպրոսի հունական և թուրքական համայնքների միջև, նպատակ ունենալով խարխլել այդ երկրի անկախությունը և նրան ենթարկել ՆԱՏՕ-ի պլաններին: Վերջերս, երբ հույն զինվորականությունը ոտնձգություն կատարեց Կիպրոսի սահմանադրական կարգի և օրինական իրավունքների դեմ, հրահրելով արյունահեղ իրադարձություններ, նույն այդ շրջանները փորձեցին կղզու ազգային հարաբերությունների պրոբլեմն օգտագործել՝ տեղի ունեցածի իսկական էությունը սքողելու և իրենց համար ձեռնտու լուծում պարտադրելու համար:

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրներն ապացուցել են, և ամբողջ պատ-



մական փորձը հաստատում է, որ կապիտալիզմի օրոք ազգային պրոբլեմն անլուծելի է: Բայց արդի դարաշրջանում ազգային բարդ պրոբլեմներն ու ընդհարումները ճակատագրական և անխուսափելի չեն: Մարդկությունն ի վիճակի է վերացնելու դրանք և պետք է անի այդ. դրա համար անհրաժեշտ է վերացնել մարդու շահագործումը մարդու կողմից, բացառել դրանք ծնող սոցիալական պատճառները:

Սոցիալիստական հասարակարգի կառուցումը մեր երկրում առաջին անգամ գործնականորեն աշխարհին ցույց տվեց, թե ինչ են իսկական իրավահավասար, եղբայրական հարաբերությունները ժողովուրդների միջև: Անկասկած, բոլոր ժողովուրդներն էլ բոլոր ժամանակներում պատշաճը կհատուցեն ազգային հարաբերությունների զարգացման սովետական փորձին:

## ՊԱՏՄԱԿԱՆ ՓՈՐՁԻ ԼԱԲՈՐԱՏՈՐԻԱՆ

Մեր բազմազգ երկրում ազգային հարցը հանդիսանում էր սոցիալիզմի համար մղվող պայքարի ընդհանուր ստրատեգիայի կարևոր հարցերից մեկը: Նախկին ցարական Ռուսաստանի բոլոր ժողովուրդների համար էլ հեղափոխության, իսկ ապա նաև քաղաքացիական պատերազմի ու իմպերիալիստական ինտերվենցիայի ժամանակաշրջանում ազգային հարցի շուրջ մղված պայքարը դարձավ ամբողջ քաղաքական պայքարի անբաժանելի մասը: Ինտերնացիոնալիստական գաղափարախոսությամբ զինված բանվոր դասակարգի շուրջը միավորված աշխատավոր զանգվածների դեմ կանգնած էին ազգային բուրժուազիայի, օրինակ՝ ուկրաինական բուրժուազիայի տարբեր ֆրակցիաները:

Քողարկվելով «դեմոկրատական» հանրապետության և կամ «ինքնուրույնության» լոզունգներով, ուկրաինական բուրժուազիան իրականում հանդես էր գալիս որպես մի համազգային ուժ, որը հենվում էր մերթ Անտանտի, մերթ գերմանական իմպերիալիզմի և կամ մեկ այլ արտաքին ուժի վրա: Նրանք բոլորն էլ, չարաշահելով աշխատավորների դարավոր ատելությունը ինքնակալության հանդեպ, ձգտում էին Ուկրաինան անջատել նոր, Սովետական Ռուսաստանից: Իսկ ինչո՞ւ աշխատավորական զանգվածները գնացին բոլշևիկների՝ միասնական բազմազգ պետության կողմնակիցների հետևից:

Նախ, այն պատճառով, որ Լենինի կուսակցությունը ազգային հարցի լուծումը կապել էր պրոլետարիատի և գյուղացիության դասակարգային պայքարի նպատակների հետ: Մարքսիստ-լենինյանները ելնում էին այն բանից, որ Ռուսաստանի ճնշված ժողովուրդների ազգային ազատագրությունն անհնար էր առանց սոցիալական ազատագրության, առանց սոցիալիստական հեղափոխության: Եվ Ուկրաինայի աշխատավոր ժողովուրդը փորձով համոզվեց, որ նացիոնալիստական բուրժուազիայի կուսակցություններից ինքը ոչ մի լավ բան չի կարող սպասել: Իր հերթին սոցիալիստական հեղափոխության հաղթանակը ևս անհնար էր առանց մեր երկրի բոլոր ազգերի աշխատավորների միասնության:

Երկրորդ, այն պատճառով, որ բոլշևիկ-լենինյանները առաջարկում և պաշտպանում էին ազգային հարցի ամենադեմոկրատական լուծումը, որը համապատասխանում էր բոլոր ազգերի աշխատավորների շահերին: Նրանք պայքարում էին ազգերի ինքնորոշման իրավունքի համար՝ ընդհուպ մինչև անջատումն ու ինքնուրույն պետության կազմավորումը: Նրանք կողմնակից էին ազգերի կամավոր միավորման՝ լիակատար և իսկական իրավահավասարության պայմաններում:

Երրորդ, այն պատճառով, որ լենինյան կուսակցությունը միշտ էլ գործով ցույց էր տալիս, որ ինքը անձնվիրաբար ու հետևողականորեն պայքարում է ինչպես նախահեղափոխական Ռուսաստանում տիրող իմպերիալիստական ճնշման դեմ, այնպես էլ այն ուժերի դեմ, որոնք «դեմոկրատիզմի» և անգամ «սոցիալիզմի» լոզունգներով փորձում էին տարանջատել բազմազգ երկրի աշխատավորներին: «Դեմոկրատիկ չէ, քաղաքացի Կերենսկի»,— բոլշևիկնե-

րի կուսակցության անունից պատասխանում էր Վ. Ի. Լենինը՝ ժամանակավոր կառավարության «դեմոկրատների» կողմից Ուկրաինայի նկատմամբ ձեռնարկված մեծապետական ակցիաներին (Երկեր, հ. 24, էջ 720): Դրա հետ մեկտեղ նա աշխատավորներին կոչ էր անում «ոչ մի բանում և ոչ մի րոպե» (Երկեր, հ. 25, էջ 99) չհավատալ ո՛չ ռուս բուրժուազիային, ո՛չ ուկրաինական բուրժուազիային, սրբությամբ պահպանել ու ամրապնդել հեղափոխական ուժերի ինտերնացիոնալ դաշինքը:

Մեծ Հոկտեմբերի գործի անմիջական շարունակությունը հանդիսացավ ՍՍՀ Միության կազմավորումը: Պատմության մեջ առաջին անգամ մի քանի ազգեր պետական դաշինքի մեջ միավորվեցին ոչ թե հարկադրանքով, այլ սեփական կամքով: Իրականություն դարձան ժողովուրդների դարավոր երազանքները ինտերնացիոնալ եղբայրության մասին: Լրիվ հաստատվել է գիտական կոմունիզմի հիմնադիրների այն կանխատեսումը, որ դասակարգերի հակամարտության վերացման հետ միասին կվերանան նաև ազգերի թշնամական հարաբերությունները:

Իհարկե, ազգային նոր հարաբերությունները հաստատվում էին աստիճանաբար, և նույնքան աստիճանաբար, փուլ առ փուլ էլ տեղի էր ունենում դրանց պետական ձևավորումը: Սկզբում ստեղծվեց սովետական հանրապետությունների դաշինքը ռազմական բնագավառում, կիրառվեց միասնական արտաքին քաղաքականություն, այնուհետև սկսեց հաստատվել համատեղ տնտեսավարումը և, վերջապես, ստեղծվեց միասնական պետություն—Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը: Այդ քայլը ոչ թե ազգային պետականության զարգացման ավարտումն էր, այլ նրա իսկական ծաղկման սկիզբը միայն: Եթե 1922 թվականին միասնական դաշինք էին կազմել 4 հանրապետություններ, ապա հիմա այն միավորում է 15 միութենական հանրապետություններ, որոնց կազմում կան 20 ինքնավար հանրապետություն, 8 ինքնավար մարզ, 10 ազգային օկրուգ:

Մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների միասնությունն ու եղբայրությունը, որոնք ծնունդ են առել Հոկտեմբերի բովում, կոփվեցին սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործման համար մղված պայքարում: Ընդհանուր ջանքերով էին ստեղծվում առաջին հնգամյակների խոշորագույն կառույցները, մեր պետության տնտեսական ու պաշտպանական հզոր պոտենցիալը: Յուրաքանչյուր հանրապետություն աշխատում է ամբողջ երկրի, և ամբողջ երկիրը՝ յուրաքանչյուր հանրապետության համար: Իրենց ջանքերի սերտ միավորման շնորհիվ ՍՍՀՄ ժողովուրդները հաջողությամբ իրականացրին ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, իսկական կուլտուրական հեղափոխությունը:

Սոցիալիստական բազմազգ պետության կենսունակության և ուժի դաժան փորձություն հանդիսացավ Հայրենական մեծ պատերազմը: Սովետական ժողովրդի հաղթանակն ապացուցեց սոցիալիստական կարգի ամրությունը և ժողովուրդների լենինյան բարեկամության անխորտակելիությունը, համոզիչ կերպով հաստատեց, որ միասնական դաշինքով միայն եղբայրական ժողովուրդները կարող են պաշտպանել իրենց հեղափոխական նվաճումները, ազատությունն ու անկախությունը:

Սովետների երկրի պատմական փորձը վկայում է, որ ազգերի սոցիալիստական զարգացման խնդիրները լուծելիս ամենից առաջ հարկավոր է հասնել նրանց քաղաքական հավասարության: Բայց սոցիալիզմը չի կարող բավարարվել դրանով: Քաղաքական հավասարության նվաճումը լրացվում է տնտեսական և կուլտուրական հավասարության նվաճմամբ: Այս պրոբլեմի լուծումից կախված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մյուս իդեաների՝ ազգերի համակողմանի բարգավաճման ու մերձեցման, ժողովուրդների եղբայրական համագործակցության և փոխօգնության, անդասակարգ հասարակության համատեղ կառուցման հիման վրա նրանց բարեկամության և ինտերնացիոնալ միասնության հաստատման գաղափարների իրականացումը: Սոցիալ-տնտեսական դարակազմիկ վերափոխումների, այդ թվում և ազգային հարցի սոցիալիստական լուծման վճռական ուժը կոմունիստական ավանգար-



դի գլխավորած բանվոր դասակարգն է: Այն միշտ աչքի է ընկել ինտերնացիոնալիզմի բարձր աստիճանով, սոցիալական արդարության և սոցիալիզմի բախտի համար պատասխանատվության մեծ զգացումով:

Դասակարգային և ազգային ճնշման վերացումը, նոր հասարակարգի կառուցումը, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների ինտերնացիոնալ միասնության ապահովումը ուղեկցվում էին բուրժուական նացիոնալիզմի և մեծապետական շովինիզմի բոլոր տարատեսակությունների դեմ կոմունիստական կուսակցության մղած ամենասուր պայքարով: Մասնավորապես, Ուկրաինայի կոմունիստները դեռ 20-ական թվականներին մերկացրին և գաղափարապես ջախջախեցին նացիոնալ-ուկլոնիստներ Ա. Շումսկուն, Ն. Խվիլևոյին և ուրիշների, որոնք ձգտում էին թուլացնել ուկրաինական և ռուս ժողովուրդների բարեկամությունը, ձախողել սոցիալիզմի կառուցման գործը: Խեղաթյուրված ներկայացվող և սխալ ըմբռնվող ազգային զգացմունքների հետ անսկզբունք խաղին կուսակցությունը միշտ հակադրում էր ազգային հարցի լենինյան ուսմունքը, բանվոր դասակարգի ինտերնացիոնալիստական հստակ դիրքորոշումը, ժողովուրդների եղբայրության և համագործակցության սոցիալիստական գաղափարախոսությունը:

Նախկին ազգային ծայրագավառների տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական վերափոխումները հնարավոր դարձան ավելի զարգացած ազգերի և, ամենից առաջ, ռուս ժողովրդի, նրա հերոսական բանվոր դասակարգի կողմից անցյալում հետամնաց ազգերին ու ազգություններին ցույց տրված համակողմանի օգնության հիման վրա միայն: Ըստ էության դա մի ամբողջ դասակարգի, մի ամբողջ ժողովրդի իսկական սխրագործություն էր, որը կատարվեց հանուն սոցիալիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի:

Սովետական ժողովուրդների միասնությունն ու փոխօգնությունը տեսանելիորեն դրսևորվում են նյութական արտադրության մեջ: Եղբայրական փոխօգնության և ազգերի միջև համագործակցության հուժկու թափի շնորհիվ ձեռք բերվեց աննախընթաց թռիչք սովետական բոլոր հանրապետությունների էկոնոմիկայի զարգացման գործում, ընդ որում անցյալում ավելի հետամնաց ազգային ծայրամասերը զարգանում էին ավելի արագ, հավասարվում առաջավորների մակարդակին: Այսպես, ՍՍՀ Միության գոյության հիսուն տարվա ընթացքում ամբողջ երկրում արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է 320 անգամ, իսկ Ղազախական ՍՍՀ-ում՝ 600 անգամ, Տաջիկական և Հայկական ՍՍՀ-ներում՝ ավելի քան 500 անգամ, Կիրգիզական ՍՍՀ-ում՝ ավելի քան 400 անգամ:

Բայց սրանից ամենևին չի հետևում, թե տնտեսությունը համատեղ վարելուց շահել են միայն անցյալում հետամնաց արդյունաբերություն ունեցող ժողովուրդները: Զարգացած արդյունաբերություն ունեցող շրջանները նույնպես շահագրգռված էին, որ իրենց էկոնոմիկան ևս զարգանար որպես միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի մի մասը, հենվելով ամբողջ երկրի՝ մասշտաբներով հազվագյուտ ռեսուրսների և շուկայի վրա: Հայտնի է, որ 1919-ից մինչև 1940 թվականն ընկած ժամանակաշրջանում արդյունաբերական տեսակետից համեմատաբար զարգացած Մերձբալթիկայի հանրապետությունների բռնի անջատումը ընդհանուր միութենական տնտեսությունից մեծապես կասեցրել էր նրանց տնտեսական զարգացումը այդ ժամանակաշրջանում: Ընդհակառակը, Սովետական Ուկրաինայի ժողովուրդը համագործակցելով և միավորվելով սովետական հանրապետությունների հետ, հենվելով նրանց օգնության ու աջակցության վրա և դրանով իսկ տասնապատկելով սեփական ուժերը, կարողացավ ինչպես հարկն է ի հայտ բերել իր տաղանդները, լայն ասպարեզ գտնել իր աշխատանքային եռանդի համար:

Ուկրաինան այժմ արտադրում է ավելի քան երկու անգամ շատ արդյունաբերական արտադրանք, քան ամբողջ երկիրը նախապատերազմյան 1940 թվականին: Հանրապետության արդյունաբերական պոտենցիալն աճել է 10 անգամ: Անչափ աճել են աշխատավորների բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը: Ուկրաինան, որտեղ հեղափոխությունից առաջ բնակչության 70 տոկոսից ավելին անգրագետ էր, այժմ համատարած գրագիտության հանրա-

պետություն է: Աճել են բարձրորակ ազգային կադրեր: Այժմ հանրապետության աշխատունակ բնակչության $^{2}/_{3}$-ը ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն: ՈւՍՍՀ-ի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են գրեթե 4 **մլն** դիպլոմավոր մասնագետներ: Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում է մոտ 1 **մլն** 600 հազար մարդ: Հսկայական են ուկրաինական սովետական գիտության, գրականության և արվեստի հաջողությունները, դրանց լավագույն նվաճումներն ստացել են համաշխարհային ճանաչում:

Ուկրաինական ժողովուրդը, որն այժմ համակողմանի բարգավաճում է, ապրում իր պատմության ոսկե դարը, սեփական ճակատագրի օրինակով զգաց կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, նրա պրոլետարական ինտերնացիոնալիզմի ստեղծագործական մեծ ուժը: Իսկ ուկրաինական բուրժուական նացիոնալիստները քաղաքական ու գաղափարական լիակատար կրախի մատնվեցին: Ուկրաինական ժողովուրդը մերժեց նրանց հակասոցիալիստական գաղափարները, իսկ նրանք դարձան բարոյալքված էմիգրանտական խմբակներ, որոնք համագործակցում են իմպերիալիստական հետախուզությունների հետ:

Մեր երկրում գործով իրականացվել է ազգերի ինքնորոշման իրավունքը. նրանցից ամեն մեկն ունի սոցիալիստական ազգային պետականություն: Հիմնականում լուծված է ժողովուրդների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման խնդիրը, ձեռք է բերվել նրանց փաստական հավասարությունը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Ձևավորվել են սոցիալիստական ազգեր, որոնք զերծ են սոցիալական և ազգային հակամարտություններից և ունեն միատեսակ սոցիալական կառուցվածք: Սովետական ժողովուրդը բաղկացած է բարեկամական դասակարգերից ու սոցիալական խմբերից, ազգերից, որոնք սերտորեն զոդված են տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի միասնությամբ, նպատակի ընդհանրությամբ, մարքս-լենինյան աշխարհայացքով: Սովետական բոլոր մարդիկ, որ հանրապետությունում էլ նրանք ապրեն, նույն սոցիալիստական հայրենիքի զավակներն ու դուստրերն են, սովետական ջերմ հայրենասերներ: Ուկրաինայի աշխատավորների համար մեծագույն պարծանք է, որ իրենք պատկանում են սովետական մեծ ժողովրդին: Որպես ամենաթանկ գանձ ուկրաինական ժողովուրդը պահպանում ու ամրապնդում է բարեկամությունը Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ, որի շնորհիվ հնարավոր դարձան մեր բոլոր պատմական մեծագործությունները:

## ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՏԻՊԸ

Սովետական պրակտիկան ցույց է տվել, որ սոցիալիստական, կոմունիստական շինարարության յուրաքանչյուր նոր բնագծում ազգային հարաբերությունները զարգանում են, ձեռք բերում նոր առանձնահատկություններ: Հասկանալի է, որ սովետական ժողովուրդը՝ որպես մարդկանց պատմական նոր հանրություն, կենդանի ու դինամիկ մի օրգանիզմ է: Ազգային հարաբերությունները մեր հասարակությունում մի այնպիսի իրողություն են, որը մշտական զարգացման պրոցեսում առաջադրում է նորանոր պրոբլեմներ ու խնդիրներ:

Սովետական հասարակության կարևորագույն օրինաչափություններից մեկը բոլոր ազգերի և ազգությունների հետագա մերձեցումն է: Այդ պրոցեսը զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործմանը զուգընթաց հետզհետե ավելի ցայտուն կերպով է դրսևորվելու ազգային տարբերությունների աստիճանական վերացման մեջ, այն ընդհանուր գծերի մշակման մեջ, որոնք հատուկ են բոլոր հանրապետությունների սովետական մարդկանց և որոնք ներառնում են նրանց ազգային բնավորության լավագույն հատկությունները:

Կուսակցությունը դեմ է այդ պրոցեսը արհեստականորեն արագացնելուն, քանի որ այն կրում է օբյեկտիվ բնույթ և թելադրվում է հասարակական զարգացման ամբողջ ընթացքով: Բնական է, որ այդ գործում կոմունիստների առաջնահերթ պարտականությունն է՝ հավատարիմ լինել լենինյան պատգա-



մին՝ առավելագույն ուշադրություն յուրաքանչյուր ազգի շահերին ու զարգացմանը: Դրա հետ մեկտեղ կուսակցությունն անհանդուրժելի է համարում ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների մերձեցման պրոցեսը կասեցնելու, այս կամ այն պատրվակով ազգային մեկուսացածությունն ամրապնդելու ամեն մի փորձ: Դա, անկասկած, կհակասեր ամբողջ երկրի և ամեն մի առանձին հանրապետության շահերին, կոմունիստական շինարարության շահերին, ինչպես նաև կոմունիստների, սովետական մարդկանց ինտերնացիոնալիստական գաղափարախոսությանը:

Հասուն սոցիալիստական հասարակության համար բնորոշ է ինտերնացիոնալացման ուժեղացումը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, ազգերի մերձեցման տնտեսական հիմքի ամրապնդումը: Այս հիմունքով կարելի է առավել լրիվ ձևով հասնել ինտերնացիոնալայինի և ազգայինի միասնության: Ելնելով սովետական պետության ընդհանուր շահերից, ինչպես նաև հաշվի առնելով այն կազմող հանրապետություններից յուրաքանչյուրի զարգացման պայմանները, ՍՄԿԿ XXIV համագումարը արտահայտեց կուսակցության և ժողովրդի կամքը՝ անշեղորեն կիրառել ՍՍՀ Միության հետագա ամրապնդման, երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի ըստ ամենայնի զարգացման լենինյան կուրսը:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունն իր մեջ ընդգրկում է բոլոր հանրապետությունների տնտեսությունը և զարգանում միասնական պետական պլանով: Սովետական տերության բոլոր ազգերի ջանքերի համակենտրոնացումը հիմնական խնդիրների լուծման վրա մի օրինաչափություն է, որը լիովին համապատասխանում է երկրի և յուրաքանչյուր հանրապետության շահերին: Աշխատանքի ներմիութենական հասարակական բաժանման խորացումը, որը հաշվի է առնում յուրաքանչյուր սովետական հանրապետության հնարավորությունները ու պահանջմունքները, արտադրության համակողմանի մասնագիտացումն ու կոոպերացումը, երկրի բոլոր ազգերի և ազգությունների համագործակցության և եղբայրական փոխօգնության ընդլայնումը, իրենից ներկայացնում է օբյեկտիվ մի պրոցես, որը պայմանավորված է արտադրության սոցիալիստական բնույթով և արդի գիտատեխնիկական հեղափոխության պահանջներով:

Ներկայումս սովետական ժողովուրդը լուծում է այնպիսի պատասխանատու խնդիրներ, ինչպես՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումը սոցիալիզմի առավելությունների հետ, ժողովրդի բարեկեցության նշանակալի վերելքի ապահովումը: Այս խնդիրների կատարումը պահանջում է առավել ինտերնացիոնալացնել սովետական պետության տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքը: Եվ կուսակցությունը հետևողականորեն վարում է այդ գիծը, որը հնարավորություն է տալիս առավել ռացիոնալ տեղաբաշխել արտադրողական ուժերը, օգտագործել երկրի բազմապիսի ռեսուրսները, ապահովել ամբողջ ժողովրդի գործողությունների առավելագույն ներդաշնակությունը:

Կուսակցությունը շարունակում է նշանակալի ուշադրություն նվիրել երկրի տարբեր շրջանների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցմանը: Այդ բանը, մասնավորապես, կարելի է դիտել մեր հանրապետության արևմտյան մարզերի օրինակով, որտեղ սովետական իշխանության տարիներին ստեղծվեց ժամանակակից ինդուստրիա, ձևավորվեց մեծաթիվ ու բարձրորակ բանվոր դասակարգ, աճեցին ժողովրդական ինտելիգենցիայի կադրեր: Այդ մարզերի էկոնոմիկան նաև ընթացիկ հինգերորդ հնգամյակում, զարգանում է ավելի արագ տեմպերով, քան հանրապետության միջին տեմպերն են: Ընդհանուր առմամբ հանրապետությունում արդյունաբերական արտադրության աճը հնգամյակի երեք տարում կազմեց 22,2 տոկոս, իսկ Տերնոպոլի մարզում՝ 43,3, Ռովնոյի մարզում՝ 35,3, Իվանո-Ֆրանկոյի մարզում՝ 30,9, Լվովի մարզում՝ 25,5 տոկոս: Այդ մարզերի աշխատավորների հաջողությունները նշանակալի են նաև գիտության ու կուլտուրայի, ժողովրդական

Արդի հակակոմունիզմը փորձում է սոցիալիստական երկրների հարաբերությունները ևս պատկերել ծայրահեղ նացիոնալիզմի դիրքերից: Մեր թշնամիները հաճախ խցկում են նացիոնալիզմի գաղափարները, մասնավորապես, այսպես կոչված «նացիոնալ-կոմունիզմի» լոզունգների տակ: Կյանքը ցույց է տալիս, որ արհեստական մեկուսացածության պայմաններում հնարավոր չէ իրականացնել սոցիալիզմի կառուցումը: Նման փորձերը գործնականում չափազանց վնասակար են ամենից առաջ տնտեսական տեսակետից, քանի որ անխուսափելիորեն տանում են դեպի հասարակական աշխատանքի վատնում, աճման տեմպերի անկում և, վերջին հաշվով, դեպի կախում կապիտալիզմի աշխարհից: Քաղաքական տեսակետից ևս դրանք ռեակցիոն են ու վնասակար, քանի որ անջատում են ժողովուրդներին, սնում են բուրժուանացիոնալիստական տենդենցներ և կարող են հանգեցնել սոցիալիստական նվաճումների կորստյան:

Հակակոմունիստները ակտիվորեն օգտագործում են նացիոնալիզմը՝ սոցիալիստական համագործակցության դիրքերը թուլացնելու, միջազգային կոմունիստական շարժումը պառակտելու իրենց ձգտման մեջ: Որքան ավելի է սրվում գաղափարական պայքարը, այնքան նացիոնալիզմը ավելի է սերտանում ռևիզիոնիզմի հետ: Թե ժողովուրդների իսկական ազգային շահերից որքան հեռու կարող են տանել նացիոնալիստական լոզունգները, ցույց են տալիս մաոիզմի արատավոր տեսությունն ու պրակտիկան: Նացիոնալիզմի և մեծ խանական շովինիզմի հետ ռևիզիոնիզմի միահյուսումը մաոիզմի մեջ հանգեցրեց այն բանին, որ չինական ու իմպերիալիստական պրոպագանդան չափազանց մերձեցել են ժամանակակից աշխարհի դասակարգային վերլուծությունը տեսականորեն սնանկ և քաղաքականապես վնասակար գեոպոլիտիկ կոնցեպցիայով նենգափոխելու փորձերի մեջ: Մաոական լիդերները կանգնել են չին ժողովրդի հեղափոխական նվաճումները խարխլելու ուղու վրա, հակասովետականության, իմպերիալիստական ռեակցիոն ուժերի հետ անսկըզբունք բլոկավորման ուղու վրա:

Ինտերնացիոնալիզմը պրոլետարական, սոցիալիստական դիրքորոշման հետևողական արտահայտությունն է ազգային հարցում: Կոմունիստները ոչ միայն չեն անտեսում ազգերի շահերն ու ազգային պրոբլեմները, ինչպես այդ փորձում են ներկայացնել բուրժուազիայի գաղափարախոսները, այլ, ընդհակառակը, հանդես են գալիս որպես ամեն մի ճնշման ամենաանհաշտ հակառակորդներ, որպես ամենից ավելի հետևողական ու կայուն հայրենասերներ: Կոմունիստական և բանվորական կուսակցությունների՝ 1969 թվականի Մոսկվայի միջազգային խորհրդակցությունը ընդգծեց. «Մարքսիստ-լենինյանները միաժամանակ թե՛ հայրենասերներ են, թե՛ ինտերնացիոնալիստներ, նրանք մերժում են թե՛ ազգային սահմանափակությունը, թե՛ ազգային շահերի ժխտումը կամ թերագնահատումը, թե՛ գերիշխանության միտումը: Կոմունիստական կուսակցությունները՝ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների կուսակցություններր, միաժամանակ իսկական ազգային շահերի դրոշակիրներ են՝ ի հակակշիռ հետադիմական դասակարգերի, որոնք դավաճանում են այդ շահերին» (**Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը,** էջ 58):

Լենինի դրած ինտերնացիոնալիստական հիմքի վրա աճում և զարգանում է Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, որը միավորում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներին, սովետական երկրի բոլոր ազգությունների զավակներին ու դուստրերին: ՍՄԿԿ-ն իրեն միշտ համարել և համարում է միջազգային կոմունիստական շարժման ջոկատներից մեկը: Նա եղբայրական կուսակցությունների հետ իր հարաբերությունները անփոփոխ կերպով կառուցում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների անշեղ պահպանման հիմքի վրա:

ՍՄԿԿ-ն ինտերնացիոնալիստների կուսակցություն է և՛ գաղափարախոսությամբ, և՛ կազմով, և՛ գործունեության բնույթով, և՛ կազմակերպական սկզբունքներով: Իր կազմի մեջ ընդգրկելով միութենական հանրապետությունների կոմկուսակցությունները, նա իրենից ներկայացնում է ոչ թե ազգային կուսակցությունների ֆեդերացիա, այլ միասնական համամիութենական մի կազմակերպություն, որն ունի միասնական ծրագիր և միասնական կանոնադրություն: ՍՄԿԿ-ն հանդես է գալիս որպես ուղղություն տվող քաղաքական ուժ, որը Սովետական Միության բազմազգ աշխատավորական զանգվածներին համախմբում է միասնական ու համերաշխ ինտերնացիոնալ ընտանիքում:

## ՄԻԼԻՈՆՆԵՐԻ ՎԱՐՔԱԳԾԻ ՆՈՐՄԱՆ

ՍՄԿԿ-ի մեծագույն նվաճումներից մեկն այն է, որ սովետական ժողովրդի հասարակական գիտակցության մեջ տեղի ունեցած հեղափոխական հեղաշրջման շնորհիվ ինտերնացիոնալիզմը կոմունիստների մի փոքրիկ խմբի իդեալներից դարձավ բոլոր ազգությունների միլիոնավոր սովետական մարդկանց խոր համոզմունք ու վարքագծի նորմ:

Հասուն սոցիալիստական հասարակությունում ազգային հարաբերությունների զարգացման հարցերը, ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորների դաստիարակության խնդիրները այսօր էլ գտնվում են ՍՄԿԿ-ի, նրա բոլոր հանրապետական ու մարզային կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Գաղափարական-քաղաքական աշխատանքի ակտիվացման, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության համար մեծ նշանակություն ունեցան ՍՍՀ Միության կեսդարյա հոբելյանի նախապատրաստումն ու համաժողովրդական տոնակատարությունը: Մենք աշխատում ենք ամրապնդել ու զարգացնել կուտակված փորձը, ձգտելով, որ հոբելյանի օրերին ծավալված աշխատանքը կատարվի սիստեմատիկաբար, հարստացնելով մեր հասարակական կյանքի բոլոր ոլորտները: Այդ ամենին մեծ ուշադրություն նվիրվեց, մասնավորապես, Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմի՝ 1974 թվականի մայիսին կայացած պլենումում, որը քննարկեց ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների լույսի տակ գաղափարախոսական աշխատանքի հետագա բարելավման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները:

Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները հետևողականորեն ու նպատակաուղղված կերպով իրականացնում են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունն ուժեղացնելու վերաբերյալ բազմապիսի կոնկրետ միջոցառումներ, որոնք նախատեսում են գաղափարախոսական ներգործության բոլոր միջոցների ու ձևերի, ամենից առաջ կուսակցական լուսավորության սիստեմի, մամուլի, հեռուստատեսության ու ռադիոյի, կուլտուր-լուսավորական հաստատությունների կոմպլեքսային օգտագործումը: Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում մեծ դեր են կատարում բովանդակությամբ սոցիալիստական, իրենց ոգով ինտերնացիոնալ արվեստն ու գրականությունը:

Ինտերնացիոնալ դաստիարակության կուռ սիստեմը ենթադրում է նրա օրգանական կապը գաղափարախոսական աշխատանքի բոլոր կողմերի, այդ թվում և սոցիալիստական հայրենասիրության դաստիարակության հետ: 1975 թ. նշվելու է Հայրենական մեծ պատերազմում ֆաշիզմի նկատմամբ տարած պատմական հաղթանակի 30-ամյակը: Այդ նշանակալի տարեթվին նախապատրաստվելու համար կարևոր էտապ հանդիսացավ Սովետական Ուկրաինայի ազատագրության 30-ամյակի տոնակատարությունը: Սովետական ժողովրդի պատմական սխրագործության պրոպագանդումը աշխատավորներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու կարևոր բաղկացուցիչ մասն է:

Աշխատավորների կոմունիստական աշխարհայացքը ձևավորվում է մեր ամբողջ սովետական իրականության ներգործությամբ: Ուստի, կուսակցությունը սկզբունքորեն կարևոր է համարում, որ գաղափարախոսական ամբողջ աշխատանքը սերտորեն կապակցվի կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հաջող լուծման համար մղվող պայքարի հետ:

Ավանդական է դարձել միութենական բոլոր հանրապետությունների արտադրական կոլեկտիվների սոցիալիստական մրցությունը: Օրինակ, շատ տարիներ միմյանց հետ մրցում են Ուկրաինայի Դոնեցկի ավազանի և Ռուսաստանյան Ֆեդերացիայի Կուզնեցկի ավազանի ածխահատները, Ղրիմի և Կուբանի գյուղատնտեսության աշխատողները:

Ուկրաինական ՍՍՀ աշխատավորները, ինչպես և ամբողջ սովետական ժողովուրդը, ակտիվորեն մասնակցելով համամիութենական սոցիալիստական մրցությանը, ջանքերը կենտրոնացնում են արտադրության որակական ցուցանիշների հետագա բարելավման, նրա արդյունավետության բարձրացման վրա: Հնգամյակի սկզբից հանրապետությունում պլանից դուրս արտադրվել և իրացվել է ավելի քան 5 մլրդ ռուբլու արդյունաբերական արտադրանք: Հնգամյա պլանի առաջադրանքներին համապատասխանում է գյուղատնտեսության համախառն արտադրանքի ձեռք բերված ծավալը: Հանրապետության դաշտերում աճեցվել է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների լավ բերք: Հաջողությամբ են կատարվում հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքները հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման ուղղությամբ:

Ինտերնացիոնալ դաստիարակությանը, ինչպես և կուսակցության ամբողջ գաղափարախոսական աշխատանքին խորթ են ֆորմալիզմն ու կամպանիականությունը: Այն պահանջում է մշտական ուշադրություն, հասարակական կյանքի և պրակտիկայի նոր երևույթների հաշվառում, ձևերի ու մեթոդների կատարելագործում, ունակություն և տակտ: Օրգանական միասնության մեջ իրականացվող այս միջոցառումները, բնականաբար, յուրաքանչյուր մարդու մեջ ամրապնդում են միասնական ընտանիքի զգացում, ինտերնացիոնալիստական գաղափարներ, որոնք տիրում են մտքերին, իրենց են ենթարկում համոզմունքները և դառնում, Կ. Մարքսի արտահայտությամբ, «կապանքներ, որոնցից չի կարելի դուրս պրծնել, առանց իր սիրտը ծվատելու...» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 1, стр. 118):

Հասարակական բոլոր ոլորտների ինտերնացիոնալացումը ուժեղացնելու՝ ՍՄԿԿ-ի մշակած լենինյան կուրսի իրականացումը միաժամանակ ենթադրում է անհաշտվողականություն դաստիարակել խորթ գաղափարախոսության բոլոր դրսևորումների նկատմամբ: Ինչպես հայտնի է, սովետական հասարակարգում վաղուց վերացված են ազգամիջյան կոնֆլիկտներ ու հակամարտություններ ծնող օբյեկտիվ պատճառներն ու պայմանները: Սակայն նացիոնալիստական վերապրուկները շատ կենսունակ են: Դրանք կարող են պահպանվել քաղաքականապես ոչ բավականաչափ հասուն առանձին մարդկանց հոգեբանության մեջ և երբեմն արտահայտություն գտնել ազգային զգացմունքների չափազանցված կամ խեղաթյուրված դրսևորման մեջ, ազգային սահմանափակության և սնապարծության մեջ, նահապետականության իդեալականացման և տեղայնության մեջ: Կուսակցական կազմակերպությունները այս ամենը հաշվի են առնում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը ուժեղացնելու իրենց աշխատանքում: Կյանքի կողմից դեն շպրտված վերապրուկները խորապես խորթ են սոցիալիստական ապրելակերպին՝ իր սոցիալական օպտիմիզմով, մարդկանց հարաբերությունների մարդասիրական ու կոլեկտիվիստական բնույթով:

Ինտերնացիոնալ դաստիարակության մեջ ՍՄԿԿ-ն առանձնահատուկ նշանակություն է տալիս գաղափարախոսական համագործակցությանը եղբայրական կուսակցությունների և երկրների հետ: Կյանքը համոզիչ կերպով բացահայտում է սոցիալիստական համագործակցության միասնությունը ցեմենտող ինտերնացիոնալ պրոցեսների վճռական դերը, նոր հասարակության «մեկուսի» կառուցման, սոցիալիզմի ազգային «մոդելների»՝ ընդհանուր օրինաչափություններն անտեսող զանազան դոկտրինաների սնանկությունը: Կուսակցությունների գաղափարախոսական համագործակցության պրոցեսում գնալով ավելի արդյունավետ է դառնում համատեղ պայքարը հանուն մարքսիզմ-լենինիզմի անաղարտության, ընդդեմ օպորտունիզմի և ռևիզիոնիզմի ամեն մի դրսևորման:



Եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորների բազմակողմանի ինտերնացիոնալ կապերն ու բարեկամությունը դարձել են սովետական մարդկանց հասարակական-քաղաքական կյանքի անբաժան մասը: Ուկրաինայի մարզերը, օրինակ, եղբայրական կապեր ունեն սոցիալիստական երկրների մարզերի հետ: Մենք կուտակել ենք Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի առանձնապես սահմանամերձ մարզերի տեղական կուսակցական կազմակերպությունների հետ գաղափարախոսական համագործակցության որոշ փորձ: Մենք ելնում ենք այն բանից, որ փոխադարձ ծանոթացումը պատմական նվաճումներին, ազգային հարցի լուծման փորձին մարքսիզմ-լենինիզմի կենսական ուժի ամենից ավելի գործուն և համոզիչ ապացույցն է:

Ազգային հարցի հաջող լուծման և ազգային հարաբերությունների հետագա զարգացման մեծահարուստ փորձը մեր երկրում անվիճելիորեն վկայում է ՍՄԿԿ տեսության և քաղաքականության գիտական խոր հիմնավորվածության, կենսունակության և ներգործունության մասին: Պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը մեր օրերում դարձել է սոցիալիստական և կոմունիստական հաջող շինարարության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի հետագա խորացման, մարդկության սոցիալական առաջադիմության արագացման գաղափարական-քաղաքական կարևորագույն գործոններից մեկը:

«Проблемы мира и социализма», 1974, № 11.

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ

Մ. Ա. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ

*Ավելի քան քառորդ դար առաջ ձևավորվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Սոցիալիստական երկրները, հատկապես տնտեսական փոխօգնության խորհրդի (ՏՓԽ) անդամ երկրները, սերտ համագործակցության շնորհիվ, քառորդ դարում պատմական հաջողությունների են հասել, որակական մեծ թռիչք կատարել հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։*

*Վաթսունական թվականների երկրորդ կեսից ՏՓԽ երկրների սոցիալ-տնտեսական զարգացումն առաջադրեց խոշոր մասշտաբի ու նշանակության այնպիսի խնդիրներ, որոնց լուծման համար անհրաժեշտ էր կատարելագործել այդ երկրների համագործակցության ձևերն ու մեթոդները։ Սոցիալիստական շինարարության պրոցեսում անցյալում գերակշռում էր յուրաքանչյուր երկրում ամեն ինչ արտադրելու տենդենցը, քիչ ուշադրություն էր նվիրվում արտադրության միջպետական մասնագիտացման ու կոոպերացման, աշխատանքի սոցիալիստական բաժանման հարցերին, արտադրությունը զարգանում էր առավելապես էքստենսիվ և ոչ ինտենսիվ եղանակով։*

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման սկզբնական փուլերում այդ երկրների տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության բնագավառում կիրառվող ձևերը սահմանափակվում էին գլխավորապես արտաքին առևտրի, ավելի զարգացած երկրների կողմից մյուսներին ցույց տրվող օգնության, անհատույց գիտատեխնիկական փաստաթղթեր տրամադրելու ոլորտով։ Նոր պահանջներին այդ ձևերն արդեն չէին կարող բավարարել։ Սոցիալիստական համագործակցության երկրների առջև ծառացան այնպիսի արմատական, կարևոր պրոբլեմներ, ինչպիսիք են՝ գիտատեխնիկական առաջընթացի ապահովումը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական զուգակցումը սոցիալիզմի առավելությունների հետ, արտադրության արդյունավետության, որակական ցուցանիշների զգալի բարձրացումը, հումքով, վառելանյութով, էներգիայով սոցիալիստական երկրների ապահովումը, բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացումը և այլն։*

*Այդ խնդիրները ժամանակակից մակարդակով կարելի էր լուծել համագործակցության ու փոխօգնության և, ամենից առաջ, տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցության ձևերը կատարելագործելու և զարգացնելու, նյութական ու աշխատանքային ռեսուրսները միավորելու միջոցով։*

*Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների՝ 1969 թ. միջազգային խորհրդակցությունը նշեց, որ սոցիալիզմի աշխարհն այժմ թևակոխել է զարգացման մի այնպիսի ժամանակաշրջան, երբ հնարավորություն է ստեղծվել առավել լիակատար չափով օգտագործելու նոր հասարակարգի ընդերքում գտնվող վիթխարի ռեզերվները, որ անհրաժեշտ է մշակել և արմատավորել տնտեսական ու քաղաքական առավել կատարյալ այնպիսի ձևեր, որոնք համապատասխանում են սոցիալիստական հասուն հասարակարգի պահանջմունքներին։*

*Տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության նոր, ավելի բարձր ձևի՝* սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի *ծավալման կուրսը*



*սոցիալիստական երկրներն սկսեցին իրագործել ՏՓԽ XXIII հատուկ նստաշրջանից հետո (1969, ապրիլ)։ Ճիշտ է, միջպետական ինտեգրացման պրոցեսն սկսվել էր սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորման, հատկապես ՏՓԽ ստեղծման ժամանակից և այս կամ այն չափով տեղի էր ունենում մինչև վաթսունական թվականների վերջը, սակայն միայն այդ նստաշրջանը, որին մասնակցում էին ՏՓԽ երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և կառավարությունների ղեկավարները, ընդունեց սոցիալիստական տնտեսական ինտեգրացման* համաձայնեցված կուրսը: *ՏՓԽ XXIII հատուկ նստաշրջանը «քննարկեց տնտեսական փոխադարձ համագործակցության հետագա զարգացման պրոբլեմները և հավաստեց մասնակից երկրների միահամուռ ձգտումը՝ առավել սերտորեն միավորելու ջանքերը սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման խնդիրների հաջող լուծման նպատակով»* (Կոմյունիկե ՏՓԽ XXIII հատուկ նստաշրջանի մասին: *«Սովետական Հայաստան», 27 ապրիլի, 1969 թ.), շեշտեց, որ երկրների «համագործակցությունը պետք է ավելի գործուն դառնա, առավել նպաստի ՏՓԽ յուրաքանչյուր երկրի և ամբողջ սիստեմի առջև դրված խնդիրների, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման հանգուցային պրոբլեմների հաջող լուծմանը։*

*Նստաշրջանը որոշեց ձեռնամուխ լինել եղբայրական երկրների տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության հետագա զարգացման հիմնական ուղղությունների ու դրանց վերաբերող կոնկրետ միջոցառումների մշակմանը* հեռանկարային տևական ժամանակաշրջանի համար» *(նույն տեղը)։*

*Դրանից հետո ՏՓԽ յուրաքանչյուր նստաշրջան նշանավորվում է ինտեգրացիոն պրոցեսների ծավալման, երկրների էկոնոմիկաների մերձեցման նոր քայլերով։ Հատկապես պետք է շեշտել 1971 թ. հուլիսին հրավիրված XXV նստաշրջանի դերը, որի մասնակիցները միաձայն ընդունեցին ՏՓԽ անդամ երկրների համագործակցության հետագա խորացման ու կատարելագործման,* սոցիալիստական տնտեսական ինտեգրացման զարգացման կոմպլեքսային ծրագիրը՝ *հիրավի պատմական, նորարարական մի փաստաթուղթ, որը, հանրագումարի բերելով ՏՓԽ երկրների տնտեսական հարաբերությունների ավելի քան 20 տարվա պրակտիկան, որոշում է ամբողջ տնտեսական համագործակցության որակական նոր աստիճանը։ Ինտեգրացման համաձայնեցված կուրսի* և կոմպլեքսային ծրագրի ընդունման շնորհիվ ՏՓԽ անդամ երկրների տնտեսական հարաբերություններում սկսվեց բոլորովին նոր փուլ՝ *սոցիալիստական տնտեսական ինտեգրացման փուլը։ Ինտեգրացումը դառնում է այդ երկրների տնտեսական զարգացման գլխավոր մայրուղին։ Քսանհինգերորդ նստաշրջանի ընդունած կոմյունիկեում սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը սահմանվում է որպես «ՏՓԽ անդամ երկրների կոմկուսակցությունների և կառավարությունների կողմից գիտակցաբար ու պլանաչափորեն կարգավորվող աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման, նրանց էկոնոմիկաների մերձեցման ու ազգային տնտեսությունների արդիական բարձրարդյունավետ կառուցվածքի ձևավորման, նրանց տնտեսական զարգացման մակարդակների աստիճանական մերձեցման ու հավասարեցման, էկոնոմիկայի, գիտության ու տեխնիկայի հիմնական ճյուղերում խոր ու կայուն կապերի ձևավորման, այդ հիման վրա երկրների միջազգային շուկայի ընդլայնման ու ամրապնդման, ապրանքա-դրամական հարաբերությունների կատարելագործման պրոցես»* (Կոմյունիկե ՏՓԽ XXV նստաշրջանի մասին, *«Սովետական Հայաստան» 31 հուլիսի 1971 թ.)։*

*Սոցիալիստական տնտեսական ինտեգրացման ծրագիրն ունի կոմպլեքսային բնույթ, պարունակում է ինտեգրացման իրականացման ավելի քան 200 կոնկրետ միջոցառումներ, որոնք ընդգրկում են արտադրության, փոխանակության և սպառման ոլորտները։ Այդ ծրագրի իրականացումը պահանջում է համակողմանի, կոմպլեքսային մոտեցում համագործակցության մեծաթիվ պրոբլեմներին, արդյունավետ ձևերի միաժամանակյա օգտագործում, յուրաքանչյուր երկրի և ամբողջ սիստեմի հրատապ խնդիրների լուծում համատեղ միջոցներով ու ջանքերով։* Ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի իրականացումը դարձել է ՏՓԽ երկրների տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության գլխավոր բովանդակությունը:

Հայտնի է, որ ՏՓԽ երկրները դեռևս գտնվում են սոցիալիստական շինարարության տարբեր փուլերում, միատեսակ չեն սոցիալիզմի կառուցման տեմպերը, մեթոդները: Սակայն ընդհանուր են սոցիալիզմի կառուցման օրինաչափությունները, միասնական է նպատակը՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը: Համատեղ ուժերով տնտեսական և գիտատեխնիկական խոշոր պրոբլեմների լուծումը, տնտեսական քաղաքականության հեռանկարային կոորդինացումը վկայում են այդ երկրների փոխադարձ վստահության բարձր աստիճանի մասին:

Սոցիալիզմի աշխարհի պատմությունը եղբայրական երկրների կապերի և համագործակցության խորացման ու զարգացման պատմությունն է: Այդ համագործակցությունն իրականացվում է ամենաբազմազան ձևերով՝ արտաքին առևտուր, գիտատեխնիկական փոխօգնություն, արտադրության միջպետական մասնագիտացում և կոոպերացում, տնտեսական պլանների կոորդինացում, կարևոր օբյեկտների համատեղ կառուցում, սոցիալիստական տնտեսական ինտեգրացում և այլն:

Եղբայրական երկրների բազմակողմանի համագործակցության և փոխօգնության ձևերի զարգացման, սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի իրականացման գործում վճռական դերը պատկանում է Տնտեսական փոխօգնության խորհրդին, որը տնտեսական համագործակցության կազմակերպման բոլորովին նոր տիպի միջազգային կազմակերպություն է:

1974 թվականի հունիսին Սոֆիայում կայացած XXVIII նստաշրջանում ՏՓԽ-ն ամփոփեց իր 25 տարվա բեղմնավոր գործունեությունը, այդ առթիվ ընդունեց ծավալուն որոշում, որտեղ սահմանված են նաև ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի իրականացման հետագա խնդիրները: Հանդես գալով իբրև եղբայրական երկրների կապերի ու համագործակցության զարգացման, տնտեսական կյանքի ինտերնացիոնալացման հետևանք, ՏՓԽ-ն միաժամանակ դարձավ այդ համագործակցության հետագա խորացման, երկրների համակողմանի մերձեցման և ինտեգրացման միջոց ու կարևորագույն գործոն:

Անցած քառորդ դարում ՏՓԽ երկրները աշխարհի ամենադինամիկ արդյունաբերական շրջանն են դարձել, ունեն տնտեսական հզոր պոտենցիալ, բարձր զարգացած արդյունաբերություն, անշեղորեն առաջադիմող գյուղատնտեսություն, վիթխարի բնական հարստություններ ու նյութական ռեսուրսներ, աճել են մեծաքանակ որակյալ կադրեր, որոնք ընդունակ են լուծելու տնտեսական և գիտատեխնիկական առաջընթացի ամենաբարդ խնդիրներ:

ՏՓԽ երկրներում ապրում է երկրագնդի բնակչության 10 տոկոսը (370 միլիոն), մինչդեռ նրանք տալիս են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի գրեթե մեկ երրորդը, այդ երկրներին բաժին է ընկնում համաշխարհային ազգային եկամտի մեկ քառորդը: Եղբայրական երկրները, առավել լրիվ չափով օգտագործելով համագործակցության, աշխատանքի սոցիալիստական բաժանման հնարավորությունները, ապահովում են էկոնոմիկայի աճի արագ և կայուն տեմպերը: 25 տարում համագործակցության երկրների արդյունաբերության արտադրանքն աճել է 12 անգամ (զարգացած կապիտալիստական երկրներում՝ մոտ չորս անգամ): Գյուղատնտեսական մթերքների արտադրությունը քառորդ դարում ավելացել է մոտ 2,5 անգամ: ՏՓԽ երկրների փոխադարձ ապրանքաշրջանառությունը 1971—1973 թվականներին աճեց 34 տոկոսով: Էկոնոմիկայի դինամիկ աճի հիման վրա արագորեն բարձրանում է ժողովրդական մասսաների բարեկեցությունը: Եղբայրական երկրների ազգային եկամուտը 25 տարում ավելացել է 8 անգամ (զարգացած կապիտալիստական երկրներում՝ միայն 3,2 անգամ): Քառորդ դարում ձեռք են բերվել սոցիալական բնույթի խոշոր նվաճումներ՝ կրթության համաժողովրդական սիստեմի ստեղծում, աշխատավորների առողջապահության և սոցիալական ապահովության արմատական բարելավում, բնակարանային պրոբլեմի լուծման մարզում լայն միջոցառումների իրականացում և այլն:

Միանգամայն պարզ է, որ եղբայրական երկրներից ոչ մեկը, առանձին վերցրած, չէր կարող այդպիսի նվաճումների հասնել: 25 տարվա փորձը վկայում է, որ միայն սերտ համագործակցության և եղբայրական փոխօգնության



ճանապարհով կարելի է հասնել համակողմանի հասարակական առաջընթացի:

ՏՓԽ-ն կոլեկտիվ փորձ է, կոլեկտիվ բանականություն, կոլեկտիվ կամք, իրավահավասարների եղբայրական դաշինք:

Առաջընթաց մեծ քայլ է կատարվել գիտատեխնիկական համագործակցության բնագավառում, որը սոցիալիզմի երկրների տնտեսական ինտեգրացման պրոցեսի կարևորագույն ոլորտներից է: Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների ամենաարագ ներդրումը դարձել է ինտեգրացման, սոցիալիստական և կոմունիստական շինարարության կարևորագույն պայմաններից մեկը: Ինտեգրացումը պահանջում է հաստատուն կողմնորոշում դեպի գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, արտադրության առավել շահութաբեր ու տեխնիկապես առաջավոր ձևերը: Ժողովրդատնտեսական հնգամյա պլաններում դրան այժմ կարևոր նշանակություն է տրվում: Օրինակ, Ռումինիայի կոմունիստական կուսակցության XI համագումարը, որ տեղի ունեցավ 1974 թվականի նոյեմբերին, երկրի առաջիկա հնգամյա պլանը (1976—1980 թթ.) համարեց «գիտատեխնիկական հեղափոխության հնգամյակ»:

Ինտեգրացման կոմպլեքսային ծրագրում որոշված են գիտատեխնիկական այն կարևոր պրոբլեմները, որոնք պետք է լուծվեն երկրների համատեղ ուժերով, հետազոտությունների կոորդինացման և կոոպերացման միջոցով: Այդ նպատակով ստեղծված են մի շարք կոորդինացիոն կենտրոններ, համատեղ գիտահետազոտական ինստիտուտներ, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններ, լաբորատորիաներ, տնտհաշվարկային գիտաարտադրական միավորումներ, իրականացվում է ձեռք բերված նվաճումների ու առաջավոր փորձի ինֆորմացիայի փոխանակում և այլն:

Հատկանշական է, որ գիտության ու տեխնիկայի ոլորտում պատրաստի փաստաթղթերի փոխանակումը գնալով ավելի մեծ չափով է իր տեղը զիջում մի քանի կամ բոլոր երկրներին հետաքրքրող կարևոր պրոբլեմների կոլեկտիվ լուծմանը:

Երկրների համագործակցության և տնտեսական ինտեգրացման պրոցեսների իրականացումն անհրաժեշտ է դարձրել միջպետական, միջազգային նոր կազմակերպությունների ստեղծումը:

Կարելի է ասել, որ արդի փուլում սոցիալիստական երկրների համագործակցությունը դրսևորում է մի կարևոր առանձնահատկություն. արդեն այժմ այն հենվում է միջպետական բազմազան (տնտեսական, գիտատեխնիկական, տրանսպորտային, կապի, վարկային-ֆինանսական, քաղաքական, ռազմական) կազմակերպությունների բավականաչափ լայն ցանցի վրա: Այդ կազմակերպությունները հիմնականում կատարում են այն ֆունկցիաները, որոնք չեն իրականացվում ՏՓԽ օրգանների կողմից:

Ինտեգրացման կոմպլեքսային ծրագիրը հստակորեն նշում է միջազգային կազմակերպությունների հիմնական ֆունկցիաները, կազմակերպական և իրավական հիմքերը: Դրանց գործունեությունը որևէ ձևով չի կարող սահմանափակել առանձին երկրների նախաձեռնությունը, ինքնուրույնությունը: Ամենատարբեր բնույթի միջպետական կազմակերպությունների առկայությունը մի կողմից ցույց է տալիս, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմում ծավալվում են ինտեգրացիոն պրոցեսներ, մյուս կողմից վկայում է, որ այդ կազմակերպությունների գործունեությունը դառնում է ինտեգրացման հետագա խորացման ու դրա զարգացման գործոն, որովհետև այդ կազմակերպություններն ըստ էության այլ բան չեն, քան ինտեգրացման իրականացման կոնկրետ ձևեր:

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը ենթադրում է արտադրության միջպետական մասնագիտացում և կոոպերացում, որոնք աշխատանքի սոցիալիստական բաժանման հիմնական ձևերն են: Արտադրության միջպետական մասնագիտացումը և կոոպերացումը արագորեն զարգանում են մեքենաշինության, մետալուրգիական, քիմիական արդյունաբերության մեջ և այլ ճյուղերում: Կիրառության մեջ են մտնում 11 համաձայնագրեր՝ մեքենաշինության, սննդարդյունաբերության, գյուղատնտեսության, խաղաղ նպատակներով ատոմային էներգիայի օգտագործման բնագավառում արտադրության մասնագիտացման ու կոոպերացման մասին: Արդեն ստեղծված են «Ինտերատոմէներ-

գր», «Ինտերտեքստիլմաշ», «Ինտերքիմվոլոկնո» միջազգային տնտեսական միավորումները, «Ինտերէլեկտրո» միջազգային կազմակերպությունը: Արտադրության միջպետական մասնագիտացումը և կոոպերացումը ընդգրկում են մեքենաշինական արտադրանքի ավելի քան 1700 տեսակներ: Ինտեգրացման զարգացման կոմպլեքսային ծրագրի իրականացումը, ինչպես ասված է ՏՓԽ 25-ամյակի մասին որոշման մեջ, «աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը կատարելագործելու մայրուղին է, ՏՓԽ մասնակից յուրաքանչյուր երկրի հանրային արտադրությունը ինտենսիվացնելու, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներին արագորեն տիրապետելու հզոր միջոց» («Սովետական Հայաստան», 21 հունիսի 1974 թ.):

Միջպետական մասնագիտացումը և կոոպերացումը ՏՓԽ երկրներին ազատում են արտադրության այնպիսի ճյուղերի զարգացման անհրաժեշտությունից, որոնց համար դրանք չունեն համապատասխան պայմաններ: ՏՓԽ երկրներում արտադրության միջպետական մասնագիտացումը խելացիորեն զուգակցվում է յուրաքանչյուր երկրի էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացման հետ: Հաղթահարվել է յուրաքանչյուր երկրում արդյունաբերական արտադրության բոլոր ճյուղերն ստեղծելու, ամեն ինչ տեղում արտադրելու ձգտումը, որը հանգեցնում էր ավելորդ զուգահեռականության, բազմաքանակ և քիչ արդյունավետ մանր ձեռնարկությունների գոյության: Ոչ թե յուրաքանչյուր երկիր, այլ համագործակցության բոլոր երկրները միասին պետք է արտադրեն ամեն ինչ: Անհնար է յուրաքանչյուր երկրում ստեղծել և տնտեսապես հիմնավորված, արդյունավետ ձևով զարգացնել գիտության ու տեխնիկայի ժամանակակից մակարդակի վրա գտնվող արտադրության բոլոր ճյուղերի կոմպլեքսը:

Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման սկզբունքների մեջ կարևոր տեղ է գրավում արտադրության միջպետական մասնագիտացման զուգակցումը յուրաքանչյուր երկրի էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացման հետ: Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը սկզբունքորեն բացառում է ինչպես մասնագիտացումից հրաժարվող ունիվերսալիզմը, այնպես էլ առանձին երկրների խիստ նեղ մասնագիտացումը:

ՏՓԽ երկրները աշխատանքի միջպետական բաժանումը, տնտեսական ինտեգրացումը իրականացնում են նպատակադրված ու պլանաչափորեն, նոր տիպի միջազգային հարաբերությունների, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների, փոխադարձ շահավետության, ընկերական փոխօգնության, ազգային և ինտերնացիոնալ շահերը խելացիորեն զուգակցելու հիման վրա:

«Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեության 25 տարիները,— ՏՓԽ հոբելյանական նստաշրջանի մասնակիցներին հղած ողջույնի մեջ նշում է Լ. Ի. Բրեժնևը,— երկրների մի մեծ խմբի իրավահավասար համագործակցության, նրանց ազգային և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զուգակցման, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների գործնական իրականացման եզակի փորձ է» («Սովետական Հայաստան», 19 հունիսի 1974 թ.):

ՏՓԽ երկրների զարգացման արդի փուլի համար բնորոշ է նաև համագործակցության խորացումն ու կատարելագործումը պլանային գործունեության բնագավառում:

Ինտեգրացման պրոցեսների ձևավորման ու զարգացման գործում շատ կարևոր նշանակություն ունեն երկրների համատեղ պլանային գործունեությունը և, ամենից առաջ, նրանց ազգային ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը: Այո՛, սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը կոմպլեքսային ծրագրին համապատասխան իրականացվում է ու պետք է իրականացվի ամենից առաջ պլանների կոորդինացման միջոցով: Կոորդինացումը երկրների միջև տնտեսական և այլ ուղղակի կապեր հաստատելու, նրանց համագործակցության կազմակերպման, ընդլայնման ու զարգացման շատ կարևոր միջոց է, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման խորացման հիմնական մեթոդ: Համագործակցության այդ ձևը հաշվի է առնում երկրների և՛ սուվերենությունը, և՛ միասնական համաշխարհային տնտեսության ըստեղծման ընդհանուր տենդենցը: Ժամանակն իր շտկումներն է մտցնում համատեղ պլանային գործունեության ոլորտում, հարստացնում այն նոր տարբերով ու ձևերով: Եթե անցյալում կոորդինացվում էին միայն հնգամյա պլանները, ապա այժմ նման կոորդինացումը լրացվում է ավելի տևական ժամանակաշրջան (10—15 և ավելի տարիներ) ընդգրկող պլաններով: Եթե առաջ կոորդինացվում էին արդեն մշակված և հաստատված պլանները, ապա այժմ կոորդինացումն սկսվում է պլանների մշակման ժամանակաշրջանում: Միաժամանակ կյանքի են կոչվել երկրների համատեղ պլանային գործունեության այնպիսի նոր ձևեր, ինչպիսիք են՝ արտադրության առանձին ճյուղերի և տեսակների համատեղ պլանավորումը, բազմակողմանի ինտեգրացիոն պլանավորումը, գիտատեխնիկական զարգացման և արտաքին առևտրի համատեղ պրոգնոզավորումը: Մի շարք երկրներում, որպես ժողովրդատնտեսական պլանների բաղկացուցիչ մաս, առաջին անգամ մտցված են սոցիալիստական տնտեսական ինտեգրացման հատուկ բաժիններ:

Արդեն ավարտված է ՏՓԽ երկրների 1976—1980 թվականների ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման աշխատանքների առաջին փուլը: ՏՓԽ պատմության մեջ առաջին անգամ ձեռնարկված է պլանային համագործակցության որակապես նոր, ավելի բարձր ձևի՝ բազմակողմանի ինտեգրացիոն միջոցառումների համաձայնեցված հնգամյա պլանի մշակումը:

ՏՓԽ մարմինները մշակում են մինչև 1990 թվականն ընկած ժամանակամիջոցում ՏՓԽ շահագրգռված երկրների էներգասիստեմների միջև էլեկտրահաղորդման գծերի զարգացման գլխավոր սխեմայի նախագիծը: Մշակվելու են նաև վառելիքի ու էներգիայի հիմնական տեսակների արտադրության զարգացման ոլորտում համագործակցության հեռանկարային ծրագրեր:

ՏՓԽ երկրների համագործակցությունն ընթանում է կողմերի լիակատար կամավորության և սուվերենության հիման վրա, նրանց ազգային և ինտերնացիոնալ արմատական շահերին համապատասխան: Սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը, մասնավորապես երկրների համատեղ պլանային աշխատանքը, ազգային պլանների կոորդինացումը պարտնյոր երկրների ազգային-պետական և ինտերնացիոնալ շահերը խելացիորեն զուգակցելու նոր արդյունավետ ձևեր են և մեծ ապագա ունեն:

ՏՓԽ-ն սոցիալիստական երկրների համար ինչ-որ ընդհանուր վերպետական պլանային օրգան չէ: Ինտեգրացման կոմպլեքսային ծրագրում նշված է, որ համատեղ պլանավորման ժամանակ պահպանվում է ներքին պլանավորման ինքնուրույն բնույթը: Համատեղ պլանավորումն իրականացվում է համապատասխան արտադրական կարողությունների և ռեսուրսների ազգային սեփականության պահպանման պայմաններում:

Եղբայրական կոմունիստական կուսակցությունները և պետությունները ՏՓԽ գործունեության տարիներին շատ բան են արել երկրների տնտեսական ու կուլտուրական զարգացման մակարդակների միջև անցյալից ժառանգված մեծ տարբերությունները հաղթահարելու համար: Ինչպես նշվում է ինտեգրացման կոմպլեքսային ծրագրում, կապիտալիստական երկրների համեմատությամբ՝ սոցիալիստական երկրներում հասարակական աշխատանքի արտադրողականության ավելի բարձր մակարդակի ձեռք բերումը օրգանապես կապված է եղբայրական երկրների տնտեսական զարգացման մակարդակների աստիճանական մերձեցման ու հավասարեցման հետ:

ՏՓԽ անդամ եվրոպական բոլոր երկրներն այժմ ինդուստրիալ կամ ինդուստրիալ-ագրարային պետություններ են: Նրանցից չորսը (ՍՍՀՄ, ՉՍՍՀ, ԳԴՀ, ԼԺՀ) մտնում են աշխարհի ամենից ավելի զարգացած ինդուստրիալ պետությունների տասնյակի մեջ:

Իրենց էկոնոմիկան արագորեն զարգացնում են Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետությունը և Կուբան: ՄԺՀ-ի ազգային եկամտի ավելի քան մեկ երրորդն այժմ ստեղծվում է արդյունաբերության և շինարարության մեջ: ՄԺՀ-ի տնտեսության օպտիմալ կոմպլեքսի ստեղծումը հնարավոր է միայն զգալի կապիտալ ներդրումների և եղբայրական երկրների համակողմանի օգնության պայմաններում: Եվ այդպիսի անշահախնդիր օգնություն ՄԺՀ-ն ստանում է: Ինտեգրացման կոմպլեքսային ծրագրով նախատեսված են հատուկ միջոցառումներ, որոնք իրականացվում են այդ երկրի էկոնոմիկայի զարգացումը

արագացնելու և արդյունավետությունը բարձրացնելու, դրանով իսկ տնտեսական ինտեգրացումը զարգացնելու նպատակով:

ՏՓԽ երկրների սերտ համագործակցության արդյունքները հետևյալ կերպ է բնորոշել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՏՓԽ XXVIII հոբելյանական նստաշրջանի մասնակիցներին ուղղած իր ողջույնում. «Աճի բարձր ու կայուն տեմպեր, գիտատեխնիկական արագ առաջընթաց, ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի անշեղ վերելք, տնտեսական զարգացման մակարդակների աստիճանական հավասարեցում—մեր երկրների անցած պատմական ուղու համար բնորոշ այս բոլոր գծերն օրգանապես շաղկապված են սոցիալիստական պետությունների համակողմանի փոխգործողության խորացման ուղղությամբ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կատարած հսկայական աշխատանքի հետ»:

Եղբայրական երկրների ձեռք բերած այս պատմական նվաճումները ցույց են տալիս նոր տիպի միջազգային հարաբերությունների մեծ առավելությունները, որոնք առանձնապես ակներև երևում են կապիտալիզմի խորացող ընդհանուր ճգնաժամի, մի շարք առաջատար կապիտալիստական երկրներում արտադրության անկման, վալյուտա-ֆինանսական, էներգետիկ ցնցումների, աշխատավորների կենսական իրավունքների դեմ մոնոպոլիաների հարձակման ֆոնի վրա:

ՏՓԽ-ն բոլորովին նոր տիպի միջազգային կազմակերպություն է: ՍՍՀՄ-ը և համագործակցության մյուս երկրները չեն ձգտում ստեղծել ինչ-որ նեղ, ներփակ միավորում, նրանք ոչ թե անջրպետվում են կապիտալիստական կամ «երրորդ աշխարհի» երկրներից, այլ ձգտում են զարգացնել տնտեսական, գիտատեխնիկական, կուլտուրական կապերը, առևտուրը, համագործակցությունը նաև այդ երկրների հետ:

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը չի իրականացվում և չի կարող իրականացվել ի վնաս ուրիշ երկրների արմատական շահերի: ՏՓԽ դռները բաց են բոլոր այն երկրների համար, ովքեր բաժանում են նրա նպատակները, սկզբունքները, նպաստում համագործակցության զարգացմանը, բոլոր երկրների միջև խաղաղության ամրապնդմանը: ՏՓԽ XXV նստաշրջանի (1971 թ. հուլիս) կոմյունիկեում ամենայն հստակությամբ նշվեց, որ ինտեգրացման կոմպլեքսային ծրագրով նախատեսված միջոցառումներին կարող է լրիվ կամ մասնակիորեն մասնակցել ՏՓԽ անդամ չհանդիսացող ամեն մի երկիր, որն առաջնորդվում է իրավահավասարության, սուվերենության և փոխադարձ շահավետության սկզբունքներով:

ՏՓԽ-ն ցույց է տալիս միջպետական բարդ պրոբլեմները նշված սկզբունքներով լուծելու հիանալի օրինակ և իր լայն կապերով դարձել է միջազգային հեղինակավոր կազմակերպություն: Դրանով պետք է բացատրել նրա գործունեության նկատմամբ աճող հետաքրքրությունը և այդ կազմակերպության հետ կապեր հաստատելու շատ երկրների ձգտումը:

ՏՓԽ-ն առանձնահատուկ ուշադրություն է դարձնում գաղութատիրությունից ազատագրված, զարգացող երկրների հետ տնտեսական կապերի և համագործակցության զարգացմանը: Այդ երկրներին նա զգալի աջակցություն է ցույց տալիս ազգային ինդուստրիայի, տնտեսության այլ ճյուղերի ստեղծման ու զարգացման, կարևոր օբյեկտների կառուցման գործում: ՏՓԽ-ն կրթաթոշակային հատուկ ֆոնդ է ստեղծել զարգացող երկրներում ազգային կադրերի պատրաստմանն աջակցելու համար:

Հատուկ համաձայնագրերի հիման վրա զարգանում է ՏՓԽ երկրների համագործակցությունը Ֆինլանդիայի հետ՝ էկոնոմիկայի, գիտության ու տեխնիկայի տարբեր բնագավառներում, կոնտակտներ են հաստատվում նաև ուրիշ երկրների (մասնավորապես Մեքսիկայի, Իրաքի) և կազմակերպությունների հետ:

Արդի փուլը բնութագրվում է նաև եղբայրական երկրների քաղաքական համագործակցության զարգացմամբ: Սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը այդ երկրների սոցիալ-քաղաքական համագործակցության և միասնության ամրապնդման նյութական հիմքն է: Նրանց տնտեսական համագործակցության, ինտեգրացիոն պրոցեսների ծավալման, տնտեսական մակարդակների մերձեցման և հավասարեցման զուգընթաց տեղի է ունենում և այդ երկրների սոցիալ-դասակարգային կառուցվածքի, հասարակության քաղաքական կազմակերպման մերձեցում: Էապես փոխվում է բանվոր դասակարգը՝ աճում է քանակապես, բարձրանում է նրա առաջատար դերը, ամրապնդվում է դաշինքը գյուղացիության և աշխատավորական մյուս խավերի հետ, բարձրանում է մտավորականության հասարակական դերը, զարգանում է սոցիալիստական դեմոկրատիան: Ամրապնդվում է եղբայրական կուսակցությունների ու պետությունների համագործակցությունը նոր հասարակարգի կառուցման, հասարակության գիտական կառավարման, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործման բնագավառներում: Նրանք զարգացնում և խորացնում են համագործակցությունը արտաքին քաղաքականության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար առավել նպաստավոր արտաքին պայմաններ ստեղծելու, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ու միջազգային կոմունիստական շարժման միասնությունն ամրապնդելու, համաշխարհային հեղափոխական շարժմանն օգնելու, խաղաղ գոյակցության քաղաքականության իրականացման բնագավառներում: Հսկայական քաղաքական նշանակություն ունեն եղբայրական կոմունիստական կուսակցությունների և երկրների ղեկավարների երկկողմ ու բազմակողմ հանդիպումները, Վարշավայի պայմանագրի պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունները:

Սոցիալիստական երկրների արտաքին քաղաքական ջանքերի կոորդինացումը առաջներում երբեք այնքան խոր ու արդյունավետ չի եղել, ինչպես վերջին տարիներին. եղբայրական պետությունները գործում են միասնական կոնտակտների և լիակատար փոխըմբռնման մթնոլորտում: Այդ ամենը տալիս է իր շոշափելի արդյունքները:

Հաջողությամբ կենսագործվում է ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը: Տեղի է ունենում միջազգային լարվածության թուլացման անկասելի պրոցես, շրջադարձ «սառը պատերազմից» դեպի սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների հարաբերությունների կարգավորում՝ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա: Միջազգային իրադրության մեջ կատարվող այդ դրական փոփոխություններն անխզելիորեն կապված են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության ամրապնդման, խաղաղասեր ուժերի ակտիվ գործունեության հետ:

Գնալով խորանում, զարգանում են ՏՓԽ երկրների կուլտուրական կապերը և համագործակցությունը: Կուլտուրական մերձեցումը եղբայրական ժողովուրդների համակողմանի մերձեցման պրոցեսի բաղկացուցիչ մասն է: Ավելի ինտենսիվ է դառնում նյութական և հոգևոր հարստությունների փոխանակումը ժողովուրդների միջև, աճում է յուրաքանչյուր երկրի ավանդը ինտերնացիոնալ կուլտուրայի ստեղծման գործում: Ինտենսիվ փոխազդեցությունը և փոխհարստացումը աստիճանաբար դառնում են ո՛չ միայն առանձին երկրների, այլև մի ամբողջ սիստեմի ժողովուրդների կուլտուրայի զարգացման բնորոշ գծերից մեկը:

ՏՓԽ երկրների կոմունիստական կուսակցությունները և պետությունները առաջնակարգ ուշադրություն են նվիրում գաղափարախոսության բնագավառում իրենց համագործակցությանը: Տնտեսական, գիտատեխնիկական, քաղաքական, կուլտուրական կապերի ու համագործակցության զարգացումը և խորացումը լավագույն պայմաններ են ստեղծում այդ երկրների ժողովուրդների բարեկամության ամրապնդման, աշխատավորներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, կոմունիստական բարոյականության ոգով դաստիարակելու, անհատի հոգեբանության վերափոխման և բազմակողմանի զարգացման, սոցիալիստական ապրելակերպի հաստատման համար:

Սոցիալիստական երկրների համագործակցության և փոխօգնության անընդհատ խորացումը և կատարելագործումը սոցիալիզմի լագերի հզորության և միասնության հետագա ամրապնդման երաշխիքն են:

# ՀԱՍԱՐԱԿԱԳԻՏԱԿԱՆ ԱՄԲԻՈՆԸ ԵՎ ՈՒՍԱՆՈՂԻ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԸ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր,
Երևանի պետական համալսարանի պատմական
մատերիալիզմի և բարոյագիտության ամբիոնի վարիչ

*Կոմունիստական հասարակության կառուցման կարևորագույն պայմաններից մեկը մարքսիստական-լենինյան գիտական աշխարհայացքին տիրապետող, գաղափարական-քաղաքական վսեմ հատկություններով օժտված, կոմունիստական բարոյականության նորմերով ղեկավարվող նոր, սովետական մարդու ձևավորումն է: Այդ նոր մարդը, որ մեր կուսակցության ու ժողովրդի կեսդարյա հերոսական ու համառ պայքարի արդյունքն է, այսօր ամբողջ աշխարհի առջև հառնում է որպես արտադրության ու գիտության առաջամարտիկ, ինտերնացիոնալիստական-հումանիստական ամենաբարձր գաղափարների կրող, ժողովուրդների ու երկրների միջև խաղաղության և համագործակցության համոզված ջատագով: Իրավամբ հպարտանալով այս համաշխարհային-պատմական վիթխարի նվաճումներով, սովետական ժողովուրդը և նրա առաջատար ու ղեկավար ուժը՝ կոմունիստական կուսակցությունը, ամենօրյա հոգատարություն են հանդես բերում նոր կյանք մտնող սերունդների կոմունիստական դաստիարակության, նրանց գիտակցականության հետագա բարձրացման նկատմամբ: ՍՄԿԿ XXIV համագումարն ամենայն հստակությամբ նշեց, որ «... աշխատավորության մարքսիստական-լենինյան աշխարհայացքի, գաղափարական-քաղաքական վսեմ հատկությունների, կոմունիստական բարոյականության նորմերի ձևավորումը այսուհետ ևս մնում է կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքի կենտրոնական խնդիրը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութեր, *էջ 271):*

*Աշխատավորական հոծ զանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, նրանց դաստիարակումը մարքս-լենինյան գաղափարներով, կոմունիստական բարոյականության վսեմ նորմերով ապահովվում են մեր ամբողջ սոցիալիստական կացութաձևով, հասարակական կյանքի ողջ ընթացքով, բայց ամենից առաջ՝ կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների գաղափարական-դաստիարակչական նպատակասլաց և հետևողական աշխատանքով:*

*Նոր մարդուն դաստիարակում, նրա աշխարհայացքը ձևավորում են հասարակության բոլոր օղակները՝ ընտանիքը, կրթական հաստատությունները, արտադրական կոլեկտիվները, հասարակական կազմակերպություններն ու միությունները, մամուլը, գրականությունը, գիտության և արվեստի հիմնարկությունները, որոնց այդ գործում ղեկավարում և ուղղություն է տալիս կուսակցությունը:*



*Մեր հասարակության զարգացման ներկա փուլում՝ հասուն սոցիալիզմի պայմաններում, կոմունիստական աշխարհայացքի ձևավորման նշված օղակների մեջ յուրահատուկ նշանակություն է ստանում բարձրագույն կրթության համակարգը՝ որպես ղեկավարող, կազմակերպող, կրթող ու դաստիարակող կադրերի պատրաստման հիմնական օջախ: Ներկա ժամանակաշրջանում բարձրագույն կրթությունն օրգանական անհրաժեշտություն է բոլոր կարգի ղեկավար աշխատողների համար և՛ արդյունաբերության, և՛ գյուղատնտեսության, և՛ գիտության, կրթության, կուլտուրայի, և՛ բոլոր մյուս բնագավառներում: 1970 թ. համամիութենական մարդահամարի տվյալներով մեր երկրի բնակչության 5,5 տոկոսը, այսինքն՝ 18 բնակչից մեկը, ունեցել է լրիվ կամ թերի բարձրագույն կրթություն, իսկ աշխատող բնակչության մեջ լրիվ կամ թերի բարձրագույն կրթություն ունեցողների տեսակարար կշիռը հասնում էր 7,8 տոկոսի (այսինքն՝ 13 աշխատող բնակչից մեկը): Այդ տոկոսները տարեցտարի անշեղորեն բարձրանում են:*

*Այսօր մոտ 10 միլիոն մարդու հասնող այդ վիթխարի բանակը բաղկացած է ինժեներներից, ուսուցիչներից, գյուղատնտեսներից, բժիշկներից, գիտնականներից, հիմնարկությունների և ձեռնարկությունների, հասարակական կազմակերպությունների ղեկավար աշխատողներից, այսինքն՝ այն մարդկանցից, որոնք պաշտոնի բերումով և իրենց հասարակական դիրքով ոչ միայն մի ինչ-որ բնագավառ կամ օղակ են ղեկավարում, այլև անընդհատ շփվում են հասարակության մյուս բոլոր անդամների հետ, իրենց անձնական օրինակով, իրենց հայացքներով ազդում նրանց վրա: Հետևաբար, նրանք պետք է ո՛չ միայն տիրապետեն այս կամ այն նեղ մասնագիտությանը, այլև աչքի ընկնեն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների խորիմացությամբ, գաղափարական-քաղաքական բարձր հատկություններով, լինեն կոմունիստական բարոյականության նորմերով ղեկավարվող ակտիվ հասարակական գործիչներ:*

*Այս հանգամանքն առանձնահատուկ խնդիր է առաջադրում բարձրագույն կրթության հաստատություններին և նրանց աշխատողներին:*

*Անշուշտ, ճիշտ չէր լինի կարծել, թե սովետական մարդկանց մարքսիստական-լենինյան աշխարհայացքը, քաղաքական-բարոյական կերպարը սոսկ բուհերում է ձևավորվում: Բուհ են ընդունվում գերազանցապես 18—20 (իսկ երեկոյան և հեռակա կրթության համար՝ 20—25 և ավելի) տարեկան երիտասարդները, որոնք անցել են միջնակարգ դպրոցի, կոմերիտմիության, զգալի չափով նաև արտադրության ու զինվորական ծառայության բովով: Նշանակում է, նրանք բուհ ընդունվելիս արդեն ունեն որոշակիորեն ձևավորված աշխարհայացք, գաղափարական-քաղաքական և բարոյական համոզմունքներ: Բարձրագույն դպրոցը, ուր նրանք սովորում են 4—5 տարի, մասնագիտական բարձըր որակավորման հետ միասին, լրջորեն ազդում է նաև նրանց աշխարհըմբռնման, սոցիալական գիտակցության, հասարակական հոգեբանության վրա, խորացնում, ամրապնդում նրանց աշխարհայացքը, գաղափարական-քաղաքական և բարոյական համոզմունքները: Այսպիսով, բուհական կրթությունը ելնում է կուսակցության այն պահանջից, որ «Երիտասարդության կրթության և դաստիարակության ամբողջ գործը պետք է ծառայի նոր սերունդների մեջ կոմունիստական համոզմունքների և բարոյականության, սոցիալիստական հայրենիքին անսահման նվիրվածության ձևավորմանը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութեր, *էջ 272):*

*Բայց երիտասարդ սերնդի դաստիարակության բնագավառում բարձրագույն ուսումնական հաստատությունների խնդիրը դրանով չի կարող սահմանափակվել: Բուհը ոչ միայն աշխարհայացք ու համոզմունքներ է ձևավորում, ոչ միայն դրանք խորացնում և ամրապնդում է, այլև երիտասարդությանը սովորեցնում է դրանցով առաջնորդվել կյանքում, փոխանցել դրանք ուրիշներին, մի խոսքով՝ լինել կոմունիստական աշխարհայացքի ու բարոյականության ակտիվ տարածողներ և դաստիարակողներ:*

*Այս կարևորագույն խնդիրն իրականացնում են բուհական բոլոր ամբիոնները, որոնք ոչ միայն մասնագիտական գիտելիքներ են տալիս, այլև դաս-*

տիրարկում ու ձևավորում են ուսանողի աշխարհայացքը, նրա գաղափարական-քաղաքական և բարոյական համոզմունքները: Այդ գործով, մասնավորապես, զբաղվում են հասարակագիտական առարկաների՝ ՍՄԿԿ պատմության, մարքսիստական-լենինյան փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի հիմունքների ամբիոնները: Բուհերի ռեկտորատների և կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ այդ ամբիոններն անմիջականորեն իրականացնում են մարքս-լենինյան աշխարհայացքի, կոմունիստական բարոյականության նորմերի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների պատվաստումն ու ամրապնդումը և գլխավորում այդ բնագավառում տարվող աշխատանքը՝ ուսման ողջ ընթացքում:

ՍՄԿԿ Կենտկոմը, քննարկելով Մոսկվայի Ն. Է. Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանում և Սարատովի Ն. Գ. Չերնիշևսկու անվան համալսարանում հասարակական գիտությունների դասավանդման գաղափարական-տեսական մակարդակի բարձրացման ուղղությամբ տարվող աշխատանքի հարցը, նշեց այդ բնագավառում ձեռք բերված հաջողությունները և միաժամանակ առաջադրեց հասարակական գիտությունների դասախոսությունների որակի հետագա բարձրացման, սեմինար պարապմունքները ստեղծագործական քննարկումների վերածելու, ուսանողների գաղափարական-քաղաքական դաստիարակության բնագավառում կուսակցական կազմակերպությունների, հասարակագիտական ամբիոնների և բուհական մյուս բոլոր օղակների գործունեությունն ավելի սերտ միավորելու խնդիրը: ՍՄԿԿ Կենտկոմը հատկապես նշեց հասարակագիտական ամբիոնների՝ որպես ուսումնական պրոցեսի բոլոր ձևերում ուսուցման և դաստիարակության միասնությունն ապահովելու կոչված հիմնական օղակների դերը:

ՍՄԿԿ Կենտկոմի այդ որոշման հիման վրա բարձրագույն կրթության ղեկավար մարմինները և բուհերը, կուսկազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ մշակել և իրագործում են մի շարք միջոցառումներ, որոնք ապահովում են գաղափարական-քաղաքական ուսուցման ու կոմունիստական դաստիարակության միասնության ամրապնդումը և հասարակական գիտությունների դասավանդման անընդհատությունը բուհական ուսուցման ողջ ժամանակաշրջանում:

Ուսանողության գաղափարական-քաղաքական կրթության, նրանց մեջ կոմունիստական աշխարհայացքի ձևավորման հիմնական օղակը բուհերում եղել և մնում է դասախոսությունը: Իհարկե, դասախոսությունը մշտապես նույնը չի մնում: Մի քանի տասնամյակ առաջ դասախոսությունը հաճախ հանգեցվում էր դասագրքի կամ ուսումնական ձեռնարկի վերաշարադրման, ընդ որում հավասարապես ուշադրություն էր հատկացվում թեմայի մեջ մտնող բոլոր հարցերի շարադրմանը: Այժմ, երբ լայնորեն հրատարակված են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը, ստեղծված են հանգամանալի և ինչ-որ չափով կայուն ծրագրեր, դասագրքեր և ուսումնական ձեռնարկներ, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը պարբերաբար հոդվածներ ու հաղորդումներ են տալիս հասարակական գիտությունների վերաբերյալ, և վերջապես, այդ բոլորի շնորհիվ բարձրագույն դպրոց եկող երիտասարդներն ունեն անհամեմատ ավելի լայն ինֆորմացիա, դասախոսությունը պետք է այլ կերպ կառուցվի: Այժմ այն պետք է ունենա ոչ այնքան ինֆորմացիոն, որքան կողմնորոշիչ բնույթ: Օգտագործելով հին փիլիսոփայի հայտնի ասույթը, կարելի է ասել, որ այժմ, առավել, քան երբևիցե, ուսանողին պետք է դիտել ոչ թե որպես անոթ, որը պետք է լցվի, այլ որպես ջահ, որը պետք է բոցավառել, անշուշտ նյութ տալով հետագայում ինքնուրույն այրվելու և լուսավորելու համար:

Ահա այստեղ շատ կարևոր է հասարակական գիտության դասախոսի անձնավորությունը, ո՛չ միայն նրա գիտելիքները, թեև դրանք ինքնին շատ անհրաժեշտ են, այլև ուսանողներին գրավելու, համոզելու, մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարներով, կոմունիստական բարոյականության վսեմ սկզբունքներով նրանց համակելու, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերն



ավելի խոր ուսումնասիրելու, մեր սոցիալիստական հայրենիքի հոյակապ նվաճումների համար հպարտության ձգտումով համակելու կարողությունը: Վ. Ի. Լենինը ուղղակի նշում էր, որ դասախոսությունների գաղափարական-քաղաքական ուղղվածությունը, դրանց բովանդակությունը որոշվում են «ամբողջությամբ և բացառապես դասախոսների կազմով», այսինքն՝ նրանց գիտելիքներով, կոմունիստական սկզբունքայնությամբ, եռանդով ու մանկավարժական հմտությամբ:

Մենք շատ ու շատ դասախոսներ ունենք, որոնք լիովին բավարարում են այդ պահանջները, ուսանողների շրջանում բարձր հեղինակություն են վայելում, նրանց համար իսկապես կողմնորոշողներ և խորհրդատուներ են: Բայց նրանց կողքին կան այնպիսիք, որոնք սոսկ «պարտականություն» են կատարում, գորշ, անհետաքրքիր, առանց ավյունի դասախոսություններ են կարդում (առանձին դեպքերում նույնիսկ բառացի կարդում են իրենց պատրաստած տեքստը): Բնական է, որ ուսանողները մեծ դժկամությամբ են հաճախում նման դասախոսություններին:

Կյանքում երբեմն տեղ են գտնում այլ կարգի երևույթներ ևս: Առանձին դասախոսներ ուսանողների մոտ էժան հեղինակություն ձեռք բերելու համար դասախոսությունների ժամանակ, կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության հարցերը լուսաբանելիս, երբեմն հրապարակում են չստուգված տեղեկություններ, ճիշտ չեն կողմնորոշում ուսանողությանը այս կամ այն քաղաքական իրադարձությունը մեկնաբանելիս: Որոշ դասախոսներ էլ, չունենալով անհրաժեշտ մանկավարժական հմտություն, ցավագին են ընդունում ուսանողների կողմից առաջադրված սուր հարցերը, բանավիճելու ու համոզվելու նրանց ցանկությունը և, չկարողանալով ճիշտ կողմնորոշել ուսանողներին, նույնիսկ կոպտում ու վիրավորում են, դրանով իսկ նրանց բացասաբար տրամադրելով և՛ իրենց, և՛ դասավանդվող առարկայի նկատմամբ: Ակնհայտ է, որ նման դասախոսների այսպես ասած օգտակար գործողության գործակիցը շատ ցածր է, և հազիվ թե կարելի է սպասել, որ նրանք կկարողանան մեր աշխարհայացքը ներարկել ու դարձնել կուռ համոզմունք: Ինչո՞վ է բացատրվում նման դասախոսների առկայությունը հասարակագիտական ամբիոններում: Ամենից առաջ, դա, ըստ երևույթին, դասախոսական կազմի ընտրության ժամանակ դեռևս ցուցաբերվող ցածր պահանջկոտության, բարեհոգության հետևանք է: Այնուհետև, դա բացատրվում է նաև նրանով, որ երբեմն վերադաս մարմինների կողմից հասարակագիտական առարկաների դասախոսներ են նշանակվում աշխատանքում ձախողված, իրենց պաշտոնական դիրքը չարաշահած մարդիկ: Վերջապես, դա անշուշտ բացատրվում է նաև հենց ամբիոններում դասախոսների հետ տարվող անբավարար աշխատանքով, ուսումնամեթոդական և գիտական աշխատանքի ցածր մակարդակով, իսկ երբեմն էլ առանձին ամբիոններում ստեղծված երկպառակություններով, հոգեբանական վատ մթնոլորտով:

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի՝ նշված որոշումից, Երևանի պետական համալսարանի հասարակագիտական ամբիոնները, ռեկտորատի և կուսակցական կոմիտեի ղեկավարությամբ, մշակել և արդեն սկսել են իրականացնել մի շարք միջոցառումներ, որոնք ապահովելու են հասարակագիտական ամբիոնների դասախոսական կազմի բարելավումը: Արդեն անց է կացվել այդ ամբիոնների դասախոսների ատեստավորում, սկսել են գործել ամբիոններին կից ուսումնա-մեթոդական և գիտական սեմինարներ, որոնք, ինչպես ցույց է տալիս մասնավորապես դիալեկտիկական մատերիալիզմի և տրամաբանության ամբիոնի երեք տարվա փորձը, զգալիորեն նպաստում են դասախոսությունների որակի և ուսումնական պրոցեսի կազմակերպման մակարդակի բարձրացմանը: Քաղաքատնտեսության, ՍՄԿԿ պատմության և գիտական կոմունիզմի ամբիոնները լայնորեն ծավալել են ուսումնական ձեռնարկների և դասախոսությունների հրատարակման գործը: Այժմ հասարակագիտական ամբիոնների նիստերում ավելի հաճախակի են քննարկվում դասախոսությունների տեքստերը, ամբիոնների վարիչների կողմից դասալսումների արդյունքները, կազմակերպ-

վում են դասախոսությունների և սեմինար պարապմունքների կոլեկտիվ ունկընդրումներ։

Դասախոսների գաղափարական-տեսական աճի և մանկավարժական վարպետության բարձրացման գործում զգալի արդյունք է տալիս նրանց պլանավորված և պարբերական վերապատրաստումը հասարակական գիտությունների դասախոսների վերապատրաստման ինստիտուտներում, ֆակուլտետներում, Միության առաջատար համալսարանների հասարակագիտական ամբիոններում։ Վերջին երեք տարում համալսարանի հասարակագիտական ամբիոնների ավելի քան 30 (հիմնականում երիտասարդ) դասախոսներ նման վերապատրաստում են անցել Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի և Ռոստովի համալսարաններում։ Փորձը ցույց է տալիս, որ վերապատրաստում անցած դասախոսները, որպես կանոն, ավելի բարձր տեսական-գործնական մակարդակով են անցկացնում դասախոսություններն ու սեմինար պարապմունքները, ավելի ակտիվորեն ու նպատակասլաց են աշխատում ուսանողների հետ։

Այս կապակցությամբ պետք է նշել մի հանգամանք. ըստ բարձրագույն կրթության ղեկավար մարմինների որոշումների, հասարակագիտական ամբիոնների բոլոր դասախոսները հինգ տարվա ընթացքում պետք է պարտադիր վերապատրաստում անցնեն։ Այդ որոշումների ընդունումից անցել է արդեն երեք և կես տարի, սակայն մինչև օրս վերապատրաստվել է դասախոսների միայն մեկ քառորդը։ Դա բացատրվում է և՛ նրանով, որ մեր հանրապետությունը վերապատրաստման ինստիտուտներում անբավարար քանակով տեղեր է ստանում, և՛ նրանով, որ գործնականորեն հնարավոր չէ ամեն տարի դասախոսական աշխատանքից ազատել ու վերաորակավորման ուղարկել ամբիոնների անդամների 20 տոկոսը։ Դրանից բացի, դասախոսների մի մասն էլ ամեն տարի փոխադրվում է գիտական աշխատողների հաստիքի կամ էլ ստեղծագործական արձակուրդ է ստանում դիսերտացիոն աշխատանքներն ավարտելու համար։ Այս հանգամանքները հաշվի առնելով, անհրաժեշտ է մտածել որակավորման բարձրացման ավելի բազմազան ձևեր կիրառելու մասին։ Ըստ երևույթին, պետք է որակավորման բարձրացում համարել նաև դասախոսի կողմից գիտական լուրջ աշխատությունների՝ մենագրությունների, դասագրքերի, ուսումնական և ուսումնա-մեթոդական ձեռնարկների պատրաստումը, միութենական կամ հանրապետական գիտական նստաշրջաններում լուրջ զեկուցումներով հանդես գալը և այլն։

Իր ողջ կարևորությամբ հանդերձ, դասախոսությունը ուսանողի աշխարհայացքի ձևավորման ու ամրապնդման սկիզբն է միայն։ Այն պետք է շարունակվի ու ելք գտնի ուսումնական և դաստիարակչական աշխատանքի մյուս ձևերում և, առաջին հերթին, սեմինար պարապմունքներում ու ուսանողի հետ տարվող անհատական աշխատանքում։ Դասախոսության միջոցով հաղորդված գաղափարներն ու տեսական դրույթները համոզմունք, յուրաքանչյուր ուսանողի սեփական ըմբռնում, այսինքն՝ նրանց գիտակցության օրգանական մաս կարող են դառնալ սեմինար պարապմունքների, զրույցների, ուսանողի կատարած ինքնուրույն ուսումնասիրության միջոցով։ Դրա համար էլ ՍՄԿԿ Կենտկոմի նշված որոշումը պահանջում է սեմինար պարապմունքներն անցկացնել մարքսիստական տեսության արդիական հարցերի ստեղծագործական քննարկման միջոցով, որը պետք է ապահովի ուսանողների ակտիվությունը և նպաստի նրանց մեջ ինքնուրույն մտածողության զարգացմանը։ Մարքսիստական-լենինյան ուսմունքը, ինչպես քանիցս նշել են նրա հիմնադիրները, դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց և, բնականաբար, այդ ուսմունքի հիմնական դրույթների ուսուցումն ու յուրացումը պետք է ընթանան ոչ թե կոնսպեկտների ընթերցման կամ առաջադրվող հարցերին ձևական պատասխաններ տալու միջոցով, այլ որպես աշխույժ, կենդանի քննարկում, երբեմն էլ որպես բանավեճ, արդիական իրադարձությունների տեսական ընդհանրացման փորձերով, կյանքից օրինակներ բերելու ու վերլուծելու, բուրժուական և ռեվիզիոնիստական տեսական դրույթները խորությամբ մերկացնելու, դրանց արատավորությունը ցույց տալու միջոցով։

Այս իսկ առումով գնալով ավելի կարևոր նշանակություն է ստանում ոչ



միայն կոլեկտիվ քննարկումը (սեմինար պարապմունքը), այլև դրա միջոցով ու դրա հիման վրա ուսանողի հետ տարվող անհատական աշխատանքը։ Այդ բանն սկսվում է ուսանողի գիտելիքների ու կարողությունների, սկզբնաղբյուրների նրա մշակումների հետ սեմինարի ժամանակ ձեռք բերած ծանոթությունից և շարունակվում որպես անհատական զրույց այս կամ այն հարցի մասին, սեմինար պարապմունքի համար այս կամ այն լրացուցիչ գրականության մշակում, քննարկման ժամանակ հատուկ ելույթ, որոշակի հարցի շուրջ ռեֆերատի կամ զեկուցման պատրաստում, մասնակցություն հասարակագիտական ամբիոններին կից գործող ուսանողական գիտական խմբակների աշխատանքներին, ուսանողական գիտական կոնֆերանսներին, ուսանողական գիտական աշխատանքների հանրապետական ու համամիութենական մրցույթներին և այլն։

Ուսանողի հետ անհատական աշխատանքի վերը նշված ձևերը հնարավորություն են տալիս ոչ միայն խորացնելու նրա գիտելիքները, ամրապնդելու նրա գաղափարական-քաղաքական համոզմունքները, այլև դրանք կիրառելու այս կամ այն աշխարհայացքային հարցի, այս կամ այն արդիական սոցիալական պրոբլեմի, բարոյական կոնկրետ երևույթի ուսումնասիրության համար։

Երևանի պետական համալսարանի պատմական մատերիալիզմի և բարոյագիտության ամբիոնը անցյալ տարի պատմական մատերիալիզմի ուսումնասիրման ժամանակ ուսանողներին հանձնարարեց ռեֆերատների թեմաներ։ Սեմինար պլանների մեջ, որոնք բազմացվում և տրվում են բոլոր ուսանողներին, առաջադրված էր ռեֆերատների ավելի քան 50 թեմա՝ հատուկ լրացուցիչ գրականության նշումով։ Ուսանողների զգալի մասը (մոտ երեք հարյուր հոգի) սեմինար պարապմունքների ժամանակ, կոմերիտական խմբերում, կուրսերում, ամբիոնին կից գիտական խմբակում հանդես եկավ անհատական և կոլեկտիվ (2—3 հոգու մասնակցությամբ) գրված ռեֆերատներով։ Ուսանողների կողմից ռեֆերատների թեմաների ընտրությունը հնարավորություն տվեց ինչ-որ չափով պարզելու, թե ինչ հարցեր են նրանց առանձնապես հետաքրքրում։ Ռեֆերատների հիմնական մասը նվիրված էր «գիտա-տեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքները և մարդու ակտիվության բարձրացումը», «սովետական հայրենասիրությունը և ժողովուրդների բարեկամությունը», «սովետական ժողովուրդը որպես պատմական նոր հանրություն», «արևմուտքի երիտասարդական շարժումների սոցիալական վերլուծությունը», «ազգայինի և միջազգայինի զուգակցումը», «կոնվերգենցիայի տեսության քննադատությունը», «անհատի և հասարակության փոխհարաբերությունը», «մարդը և նրա սոցիալական միջավայրը», «բարոյականության և քաղաքականության միասնությունը» թեմաների հետազոտությանը։ Լավագույն ռեֆերատները ներկայացվեցին հասարակական գիտությունների գծով ուսանողական գիտական աշխատանքների համամիութենական 5-րդ մրցույթի համալսարանական և հանրապետական տուրերին, դրանցից 4-ը ստացան հանրապետական մրցանակ, իսկ մեկը՝ համամիութենական։

Պատմական մատերիալիզմի դասավանդման ժամանակ ռեֆերատների կիրառումը ցույց տվեց, որ դրանց շնորհիվ ոչ միայն ավելի սերտ և ավելի ամուր է դառնում դասախոսի կապը ուսանողների հետ, այլև հնարավորություն է ստեղծվում ընդհանուր տեսական դրույթներն ավելի լավ կապակցելու ուսանողի մասնագիտության հետ, ավելի խոր ըմբռնել մեր հասարակական կյանքի մի շարք նոր երևույթներ, ուսանողին մղել ակտիվ ինքնուրույն ուսումնասիրության։

Ուրախալի է, որ ՍՄԿԿ Կենտկոմի նշված որոշումը ուղղակի հանձնարարում է հասարակական գիտությունների սեմինար պարապմունքների ժամանակ ուսանողական զեկուցումների և ռեֆերատների պարբերական քննարկումներ, հասարակական գիտությունների առավել բարդ և կարևոր հարցերի շուրջ բանավեճերի կազմակերպում, ուսանողական գիտական աշխատանքների մըրցույթների հետագա ծավալում։ Այդ հանձնարարականից ելնելով, ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, ՀԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն այս ուսումնական տարում անց են կացնում ազգային

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ՈՐՏԵՂ ԵՆ ԿՈՐՉՈՒՄ «ՁԻԱՈՒԺԵՐԸ»

Ա. Ս. ՀԱԽՈՒՄՅԱՆ

Տնտեսության մեջ միշտ չէ, որ ամեն ինչ հարթ է ու խաղաղ: Կյանքը հոգսեր է ստեղծում և նույնիսկ՝ բարի առիթներով: Վերցնենք, օրինակ, հանրապետության տրակտորային պարկը: Վերջին 13 տարիների ընթացքում տրակտորների թիվն ավելացել է երեք, կոմբայններինը և բեռնատար մեքենաներինը՝ շուրջ երկու անգամ: Հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենայական պարկի նման աճը զգալի բարձրացրել է էներգահագեցվածության և էներգազինվածության ցուցանիշները: Այսպես, եթե 100 հեկտար ցանքատարածություններին ընկնող էներգահագեցվածությունը Միության մասշտաբով, միջին հաշվով, 148 ձիաուժ է, այդ թվում՝ կոլտնտեսություններում՝ 153, իսկ սովխոզներում՝ 143 ձիաուժ, ապա մեր հանրապետությունում այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմում են՝ 356, 307 և 428: Մեզ մոտ ցածր չեն նաև մեկ մարդուն ընկնող աշխատանքի էներգազինվածության ցուցանիշները: Կոլտնտեսություններում դրանք կազմում են 7,1, սովխոզներում՝ 8,8 ձիաուժ, իսկ հանրապետական միջինը՝ 7,8 է:

Տեխնիկան դրական է ազդել հողագործության կուլտուրայի վրա, թեթևացրել երկրագործի աշխատանքը, բարձրացրել բերքատվությունը: Սա, անշուշտ, ուրախալի է: Սակայն քիչ չեն նաև հոգսերն ու դժվարությունները: Թվում է, թե տեխնիկական զինվածության աճին զուգընթաց կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը. դժբախտաբար, գյուղատնտեսական մեքենաների արտադրողականությունը կրճատվել է: Եթե 1957 թ., այսինքն՝ ՄՏԿ-ների շրջանում, 15 ձիաուժանոց մեկ տրակտորի արտադրողականությունը 295 հեկտար էր, ապա 1961 թ. այդ թիվը կրճատվեց 98-ով, իսկ 1972 թ. կազմեց 170 հեկտար, այսինքն՝ այս ժամանակամիջոցում մեկ տրակտորի արտադրողականությունն իջավ 125 հեկտարով, իսկ հերթափոխային արտադրանքը 2,1-ից՝ 1,02 հեկտարի: Համանման են և օրական արտադրանքի ցուցանիշները. նախկին 2,5-ի փոխարեն այն այժմ 1,02 հեկտար է:

Բերված թվերը տագնապալի են: Ավելացնենք, որ զգալի բարձրացել է վարելու հերկի տրակտորային աշխատանքների ինքնարժեքը: Եթե 1958 թ. փափուկ հերկի մեկ հեկտարի ինքնարժեքը 4 ռ. 61 կ. էր, ապա այժմ՝ 8 ռ. 44 կ.: Մտահոգիչ է և այն, որ հաճախ, աշխատանք չլինելու պատճառով, հզոր մեքենաները սեզոնում պարապուրդի են մատնվում, իսկ դրանց արժեքն ընկնում է արտադրանքի ծախքերի վրա: Մի խոսքով, առկա բավական շատ «ձիաուժերը» տարվա զգալի մասում չեն օգտագործվում: Օրինակ, թրթուրավոր տրակտորները ցանքավարտից բերքահավաք լավագույն դեպքում կիսով չափ են օգտագործվում: Շատ են փաստերը, երբ մեքենայական պարկը գերազանցում է կոլտնտեսության կամ սովխոզի աշխատանքների ծավալը: Եվ, որպեսզի այդ տեխնիկան քիչ թե շատ նորմալ օգտագործեն, տնտեսությունները ստիպված են պահել բազմաթիվ բանվորներ, տեխնիկներ, ունենալ արհեստանոցներ, գարաժներ, պահեստամասեր: Այս ամենը կապված է մեծ ծախսերի



ների հետ: Փոքր տնտեսությունները պարզապես անկարող են նման ծախքեր կատարել: Բայց միշտ չէ, որ «Գյուղտնտտեխնիկա»-ն ապահովում է տեխնիկական սպասարկումը, մեքենաների շահագործումը: Ուստի, կոլտնտեսությունների համար երբեմն ավելի ձեռնտու է նոր տրակտոր գնելը, առանց հինը դուրս գրելու, որը թեև դեռևս ո՛չ բարոյապես է մաշվել, ո՛չ էլ ֆիզիկապես: Իսկ նման շռայլությունը խորացնում է տեխնիկայի պակասը ոչ միայն հանրապետության, այլև ողջ երկրի մասշտաբով:

Ինչպե՞ս լուծել այս հակասությունը: Տնտեսությունների, շրջանների շատ ղեկավարներ և մասնագետներ համոզված են, որ ոչ մեծ կոլտնտեսությունում հարկ չկա պահելու սեփական տեխնիկա:

Ուսումնասիրությունները վկայում են, որ հանրապետության տնտեսությունների մեքենա-տրակտորային պարկը համալրվում է արագ, առանց հիմնական հաշվարկների և տեխնիկական քարտերի, որը և հանգեցրել է թրթուրավոր ու անվավոր տրակտորների համամասնության ճիշտ զուգակցման խախտման: Այսպես, Արարատյան դաշտի տնտեսություններում 40 տոկոս թրթուրավոր և 60 տոկոս միջշարային մշակության տրակտորների փոխարեն թրթուրավորները կազմում են 70, իսկ միջշարայինը՝ 30 տոկոս: Նույն վիճակն է և հանրապետության մասշտաբով: Դրա հետևանքով տնտեսություններում կուտակվել են մեծ թվով հզոր թրթուրավոր տրակտորներ, և այդ «ուժերը» տարվա ընթացքում հնարավոր չէ լիովին օգտագործել: Պատահական չէ, որ Տ—74, ԴՏ—75, ԴՏ—54Վ և այլ հզոր թրթուրավոր տրակտորների տարեկան բեռնվածության միջինը 67 հեկտար է:

Մասիսի շրջանի 19 սովխոզներում այս թիվը սոսկ 25 հեկտար է: Նույն շրջանի Ջրահովտի կոլտնտեսությունն ունի ընդամենը 44 հեկտար վարելահող և 60 հեկտար խաղողի այգիներ, մինչդեռ՝ 3 հզոր թրթուրավոր և 4 միջշարային մշակության տրակտորներ. յուրաքանչյուր տրակտորի բեռնվածությունը սեզոնում հետևյալն է՝ 15 հեկտար վարելահող և 20 հեկտար բազմամյա կուլտուրաներ: Ավելին, վերջերս կոլտնտեսությունը ձեռք բերեց սիլոսահավաք և կարտոֆիլահավաք մեքենաներ, որոնց բեռնվածությունը 10—12 հեկտար է:

Հոկտեմբերյանի շրջանում կենտրոնացված են մոտ 600 տրակտորներ, այսինքն՝ հանրապետության տրակտորային պարկի մեկ յոթերորդը: Այստեղ ամեն մի էտալոնային տրակտորի բեռնվածությունը կազմում է 25 հեկտար: Նորապատ, Երվանդաշատ, Հայկավան, Ջրաշեն, Բերքաշեն գյուղերի տնտեսություններում մեկ էտալոնային տրակտորի արտադրանքը 3—5 անգամ ցածր է նորմայից, իսկ մեկ կոմբայնի սեզոնային բեռնվածությունը շրջանում կազմում է 63, առանձին տնտեսություններում ավելի քիչ՝ 22—40 հեկտար:

Ազիզբեկովի շրջանի Աղավնի գյուղի կոլտնտեսությունը պահում է մեքենատրակտորային պարկ, երբ նրա ցանքատարածությունները ընդամենը 385 հեկտար են, իսկ Փոռ գյուղի կոլտնտեսության վարելահողերը՝ ընդամենը 168 հեկտար են: Նույն վիճակն է Եղեգնաձորի շրջանի Արփիի, Վերնաշենի, Խաչիկի, Ելփինի սովխոզներում: Արարատյան դաշտի տնտեսություններում կուտակված է 2—3, առանձին դեպքերում՝ 4—5 անգամ ավելի տեխնիկա, քան պահանջվում է նորմայով: Ավելացնենք նաև այն, որ մեր կոլտնտեսությունները բազմաճյուղ են և յուրաքանչյուր կուլտուրայի մշակությանը հատկացվում են 30—40, իսկ երբեմն էլ՝ նաև 2—3 հեկտար հող: Այդ կուլտուրաներից յուրաքանչյուրի մշակման համար նրանք հարկադրված են ձեռք բերել հատուկ մեքենաներ: Կաշխատի, ասենք, թրթուրավոր տրակտորը 1—2 օր, մի քանի օրվա ընթացքում կոմբայնը կհավաքի բերքը, ու մեքենաները նորից ծածկի տակ կմտնեն մինչև հաջորդ սեզոնը: Մեխանիզատորները կատակով ասում են՝ մեքենաները պարապուրդից ավելի շատ են փչանում, քան աշխատանքից: Դրանց արժեքը ծանր կշռաքարի պես ընկնում է աշխատանքի ինքնարժեքի վրա: Այս կատակը զուրկ չէ ճշմարտությունից: Մի՞թե խելամիտ է, երբ Արարատյան դաշտի կոլտնտեսությունները, ունենալով, միջին հաշվով, 50—55 հեկտար հացահատիկային ցանքատարածություն, ունեն 8—8,5 հազար ռուբլու արժողությամբ կոմբայններ: Քանի որ աշխատանքի ասպարեզ չկա, դրանց սեզոնային արտադրանքը, բնականաբար, զգալիորեն ավելի քիչ է, իսկ աշխա-

րը հիմնականում ինքն է վերցնում։ Ինչպե՞ս դուրս գա այս վիճակից միավորումը, որ հենց ստեղծված է տեխնիկայի սպասարկումը կարգավորելու համար։

Միավորումը գործում է տարուց ավելի, բայց, արդեն նրա հետքերով շատերն են գնում։ Մենք ներկա եղանք մի վեճի. ո՞ր ուղղությամբ պետք է զարգանան այսպիսի միավորումները։ Ոմանք պնդում են, որ դրանց հիմնական խնդիրը՝ տեխնիկայի օգտագործման վճռական բարելավումն է։ Մյուսները պաշտպանում են այն տեսակետը, թե մեքենայացման ու էլեկտրիֆիկացման միավորումը հեռանկարում պետք է պատասխանատու լինի ոչ միայն տեխնիկայի խելամիտ օգտագործման համար, այլև վերջնական արդյունքների՝ բերքի համար։ Չադիրլունգյան միավորումը դեռևս սաղմնավորման շրջանում նշեց ինժեներական ու ագրոնոմիական ծառայությունների փոխկախվածության անհրաժեշտությունը. այստեղ միասին են աշխատում ինժեներ-կազմակերպիչը և ագրոնոմ-տեխնոլոգը։ Բայց հետագայում ինչպե՞ս կզարգանան այդ փոխհարաբերությունները, կառուցվածքային և կազմակերպչական ինչպիսի՞ ձևեր կընդունի ուրիշ շրջաններում և հանրապետություններում մեքենայացման միավորումը, որը հեռանկարում գուցե և պատասխանատու կլինի ոչ միայն տրակտորային պարկի հստակ ռիթմի, այլև բերքատվության համար։ Այս հարցերի լուծմանը պետք է մասնակցեն նաև մեր հանրապետության գիտնականները, մասնագետները, տնտեսագետները։

Եվ կոլտնտեսությունների խորհրդում, և միավորումում մարդիկ մտածում են, որոնում, վիճում։ Բախվում են կարծիքները։ Եվ, եթե ինչ-որ տեղ փաստարկները չեն բավականացնում, ապա հավաքվում են խորհրդակցության։

«Ի՞նչ գիտեք դուք Չադիրլունգի մեքենայացման ու էլեկտրիֆիկացման միավորման մասին և ինչո՞վ եք աջակցել փորձանմուշի հաջողությանը». այս հարցով Քիշնևում դիմեցինք գիտա-հետազոտական մի քանի կենտրոնների ղեկավարներին։ Ահա նրանց պատասխանները.

**Ա. Ն. Բլանովսկի** *(Գյուղատնտեսության էկոնոմիկայի գիտա-հետազոտական ինստիտուտի դիրեկտոր)*։ Շատ առաջադեմ գործ են նախաձեռնել Չադիրլունգում։ Մեր աշխատակիցը մեկնել է այնտեղ։ Նրա առաջարկությամբ՝ միջկոլտնտեսային շրջսովետը դիմեց մեզ գրավոր խնդրանքով՝ կազմել միավորման գյուղատնտեսական տեխնիկայի օպտիմալ կառուցվածքի հաշվարկներն ու դիսպետչերական ծառայության կազմակերպման նախագիծը։ Այս թեմաները, ինչպես նաև տրակտորային բրիգադներում աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու հարցերն արդեն մտել են մեր աշխատանքային պլանի մեջ...

**Վ. Ս. Ռոտարու** *(Մոլդավական ՍՍՀ պետպլանին կից տնտեսական հետազոտությունների և գիտա-տեխնիկական ինֆորմացիայի ինստիտուտի դիրեկտորի տեղակալ)*։ Ուսումնասիրելու ենք նրանց փորձը, որ ընդհանրացնենք և հրապարակենք որպես ինֆորմացիա։

Մոսկվայի գյուղատնտեսական արտադրության մեքենայացման համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի մեքենա-տրակտորային պարկի տեխնիկական սպասարկման ու օգտագործման կազմակերպման լաբորատորիայում ինձ ասացին.

— Գյուղատնտեսական արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման չադիրլունգյան միավորման փորձը՝ ինժեներական ծառայության ապագան է գյուղում և երկրի բոլոր այն շրջաններում, որոնք տեխնիկայի օգտագործման պայմաններով նման են Մոլդավիային։ Այն պետք է արմատավորել ու տարածել։

. . .

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՎՏՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՅՍՕՐՆ ՈՒ ՎԱՂԸ

Ջ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ վաստակավոր ինժեներ

## ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՀՄ-ՈՒՄ ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսվում է երկրում ավտոմոբիլների թողարկումն ավելացնել ավելի քան երկու անգամ, այդ թըվում՝ բեռնատարներինը՝ մոտ 1,5, իսկ մարդատարներինը՝ 3,5—3,8 անգամ։ Համագումարը շեշտեց, որ սոցիալիստական արտադրության զարգացման տեմպերը, նրա արդյունավետության բարձրացումը և աշխատանքի արտադրողականության աճի արագացումը պայմանավորված են գիտատեխնիկական առաջընթացի թափով։

Հիրավի, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումն ավտոմոբիլային արդյունաբերության բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների և գիտահետազոտական ինստիտուտների հիմնական խնդիրն է։ Իսկ դա նշանակում է՝ արտադրության նոր, ավելի բարձր արտադրամիջոցների, նոր նյութերի ու տեխնոլոգիական պրոցեսների ստեղծում և ներդրում, արտադրանքի որակի տեխնիկական հագեցվածության մակարդակի առավել բարձրացում, աշխատապայմանների համատարած բարելավում։

Այժմ տեխնիկական վերազինման գործն ընդգրկել է արդյունաբերության այդ ճյուղի ձեռնարկությունների բացարձակ մեծամասնությանը։

Արտադրակարողությունները զարգանում են գործող արտադրությունների մասնագիտական և նախաշինվածքների, դետալների, ագրեգատների ու ավտոմոբիլների արտադրության նոր, մասնագիտացված գործարանների ստեղծմամբ, ժամանակակից տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի, արտադրության ու աշխատանքի կատարելագործված եղանակների և միջոցների կիրառմամբ, որոնք մեծապես նպաստում են ավտոմոբիլային արդյունաբերության զարգացմանը։

Ավտոմոբիլների արտադրության աճը ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության գծով (տոկոսներով)։

| տարի | ավտոմոբիլներ ընդամենը | ավտոմոբիլներ բեռնատար | ավտոբուսներ | ավտոմոբիլներ մարդատար |
|---|---|---|---|---|
| 1965 | 100 | 100 | 100 | 100 |
| 1970 | 142,4 | 137,3 | 135,2 | 153,2 |
| 1975 | 311,0 | 188,3 | 213,7 | 562,0 |

Մեր երկրում տարեցտարի ավելանում է բեռնաշրջանառությունը, որի ըզգալի բաժինն ընկնում է ավտոտրանսպորտին։ ՍՍՀՄ-ում ավտոմոբիլային փոխադրումների աճը հիմնականում կատարվում է բեռների խոշորացման ու համակենտրոնացման և մեծ բեռնունակություն ունեցող տրանսպորտային միջոցների կիրառմամբ։ Այդ հնարավորություն է ընձեռում բարձրացնելու փոխադրումների արտադրողականությունը և իջեցնելու շարժակազմի շահագործման ծախսերը։

Սակայն կան մեծ չափերով մանր մասնաքանակային փոխադրումներ, որոնց խոշորացումը տնտեսապես շահավետ չէ։ Դրանք ձեռնարկություններում մանր բեռների, առևտրի ցանցի և հասարակական սննդի օբյեկտների ապրանքների ու մթերքների, փոստի փոխադրումներն են, մթերքների ու մանրածախ ապրանքների տուն հասցնելը, մթերքների փոխադրումը դպրոցներ, բուժհիմնարկներ և այլն։

Ներկայումս այդ նպատակների համար հիմնականում օգտագործվում են միջին բեռնունակության ավտոմոբիլները։ Դրա հետևանքով մանր մասնաքանակային փոխադրումների ինքնարժեքը մի քանի անգամ գերազանցում է մասսայական բեռների փոխադրումների ինքնարժեքը։ Հետևապես, հարց է դրվում՝ պակասեցնել մանր մասնաքանակային փոխադրումների ծախսերը։

Ուստի, մանրածախ ապրանքաշրջանառության ծավալին համապատասխան, պետք է զարգացնել փոքր բեռնունակություն ունեցող ավտոմոբիլների թողարկումը։

Բեռնատար ավտոմոբիլների արտադրության ուսումնասիրությունն առավել զարգացած կապիտալիստական երկրներում՝ ԱՄՆ-ում, ԳՖՀ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և Ճապոնիայում, որոնց բաժին է ընկնում ավտոմոբիլների համաշխարհային թողարկման մինչև 85 տոկոսը, ցույց է տալիս, որ փոքր բեռնունակությամբ ավտոմոբիլների (մինչև 2 տոննա) արտադրությունը կազմում է բեռնատար ավտոմոբիլների ընդհանուր թողարկման 60—70 տոկոսը։

Սոցիալիստական երկրներում փոքր բեռնունակությամբ բեռնատար ավտոմոբիլների արտադրությունը մինչև 1963—65 թթ. համեմատաբար մեծ չէր, սակայն, վերջին տարիներս դրանց թողարկումն անընդհատ ավելանում է, հատկապես ԼԺՀ-ում և ԳԴՀ-ում։

Լեհաստանն այժմ թողարկում է նման կարգի երկու բեռնատար ավտոմոբիլ. «Ժուկ»-ը կողային պլատֆորմով, 800 կգ բեռնունակությամբ, և «Նիսա» ֆուրգոնը՝ 1000 կգ բեռնունակությամբ, ընդ որում վերջինս 1968 թ. մեծ քանակությամբ առաքվում է ՍՍՀՄ։

ԳԴՀ-ն թողարկում է «Բարկաս» ավտոմոբիլ-ֆուրգոնը մինչև 1000 կգ բեռնունակությամբ և բեռնատարի վերափոխված «Տրաբանդ» մարդատարը։

Չեխոսլովակիան թողարկում է բեռնատար ֆուրգոնի վերափոխված «Շկոդան», իսկ 1968 թ. ֆրանսիական Պեժո ֆիրմայի լիցենզիաներով սկսել է թողարկել 1,5 տոննա բեռնունակությամբ ավտոմոբիլներ (ֆուրգոն և կողային ավտոմոբիլ)։



Ներկայումս ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության սիստեմում, մեր հանրապետությունում գործում են ավտոմոբիլային երեք՝ «Երազ» ավտոբեռնիչների և ավտոպահեստամասերի գործարաններ, որոնցից յուրաքանչյուրն իր տեղն ու նշանակությունն ունի Սովետական Միության ավտոմոբիլային արդյունաբերության մեջ։

Արտադրության սոցիալիստական եղանակը հնարավորություն է ընձեռում ավելի ռացիոնալ կազմակերպելու ուղևորների և ապրանքների փոխադրումները։ Դրա համար, մեր կարծիքով, ընդհանուր պարկում բեռնատար փոքր ավտոմոբիլների օպտիմալ բաժինը պետք է կազմի 25—30 տոկոս։ Մինչդեռ այժմ, երբ այդ ավտոմոբիլների քանակը քիչ է, մենք հսկայական վնասներ ենք կրում։

1974 թ. հունիսին հանրապետության ղեկավար աշխատողները պետպլանի մասնագետների մասնակցությամբ խորհրդակցեցին ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության ղեկավարության հետ։ Արդյունքը եղավ այն, որ կանխատեսվեցին միջոցառումներ՝ ընդլայնելու եղած գործարանները, ինչպես և հանրապետությունում ստեղծելու ավտոմոբիլային արդյունաբերության նոր ձեռնարկություններ։

## «ԵՐԱԶ»-Ը

Երևանի ավտոմոբիլային գործարանը կառուցվել է 1965 թ. 0,8—1,0 տոննա բեռնունակությամբ ավտոֆուրգոններ արտադրելու համար։ 1966 թ. թողարկվեցին առաջին ավտոմոբիլները։ Տարեցտարի մեծացնելով իր կարողությունը, այն անցյալ տարի թողարկեց մի քանի հազար ավտոֆուրգոն։ Գործարանը նախագծային կարողությամբ աշխատելու դեպքում կարտադրի ավելի շատ ավտոմոբիլ։

Այժմ ավարտվում է 2-րդ կորպուսի շինարարությունը, շուտով կկառուցվի ինժեներային տասհարկանի մասնաշենքը, մոնտաժվում է հավաքովի կոնվեյեր, տեղակայվում է ներկման գլխավոր կոնդուկտորը և այլն։ Կասկած չկա, որ գործարանը 1976—1977 թթ. կհասնի իր առջև դրված խնդիրների լուծմանը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ մեքենաների թողարկման ավելացնելու և արտադրապրոցեսների մեքենայացման մակարդակը բարձրացնելու շնորհիվ հետզհետե իջնում է արտադրանքի ինքնարժեքը. մոտ ապագայում այն կհասնի երկրի ավտոշինարարության առաջավոր գործարանների մակարդակին։

Ջնայած գործարանի կոլեկտիվի ձեռքբերումներին, դեռևս կան մի շարք չլուծված հարցեր, որոնց պետք է հատուկ ուշադրություն նվիրել։

Այդ հարցերից մեկը նոր մոդելի ավտոֆուրգոնի արտադրությունն է։ Այն ներկայումս թողարկվող մոդելի համեմատությամբ շահագործման տեսակետից ունի դրական շատ կողմեր և հասնում է համաշխարհային ստանդարտների մակարդակին։ Նոր մոդելի բազայի վրա գործարանը պետք է մշակի իզոթերմիկ թափքով և սառնարանային կայանքով ավտոֆուրգոնների կոնստրուկցիա, յուրացնի դրանց արտադրությունը։ Կոլեկտիվի առջև նաև բարդ խնդիր է դրված՝ մշակել կոնստրուկցիան և պատրաստել էլեկտրամոբիլի փորձանմուշներ։

Մի քանի տարի առաջ ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության հատուկ խումբը գործարանի աշխատողների հետ համատեղ միջոցառումներ մշակեց ձեռնարկության կարողությունը տարեկան մի քանի տասնյակ հազարի հասցնելու համար։ Սակայն «Երազ»-ների հետևի և առջևի կամրջակներն ստացվում են երկրի այլ ավտոգործարաններից. այս հանգամանքը զգալի խոչընդոտում է հարցի դրական լուծմանը։ Մինիստրությունը

պլանավորում է առաջիկայում գործարանի կարողությունը հասցնել տարեկան մի քանի տասնյակ հազարի:

Այստեղից անհրաժեշտ է դառնում ավտոմեքենայի հետևի և առջևի կամրջակների արտադրությունը կազմակերպել հանրապետության ներսում՝ Երևանի ավտոպահեստամասերի գործարանում:

## ԵՐԵՎԱՆԻ ԱՎՏՈՊԱՀԵՍՏԱՄԱՍԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆԸ

Այժմ գործարանը թողարկում է 42 անուն պահեստամաս, որոնցից 20-ը՝ «Մոսկվիչ—401» և «Մոսկվիչ—402» ավտոմեքենաների համար: Այդ պահեստամասերի պահանջարկը տարեցտարի նվազում է, որի հետևանքով այդ դետալները թողարկող տեխնոլոգիական գծերի կարողություններն օգտագործվում են մինչև 20 տոկոս, իսկ արտադրությունն զբաղեցնում է 2.100 քմ տարածք:

«Զիլ—130» ավտոմոբիլի՝ գործարանում պատրաստված կիսասռնիի ինքնարժեքը կազմում է 9 ռուբ. 46 կոպ., մինչդեռ թողարկման գինը 5 ռուբ. 80 կոպ. է, դրա հետևանքով պլանային առումով գործարանը համարվում է ոչ շահութաբեր:

Գործարանի արտադրական տարածությունններն առավել ռացիոնալ օգտագործելու համար, մեր կարծիքով, նպատակահարմար է ձեռնարկության արտադրությունից աստիճանաբար հանել պահեստամասերը և դրանց փոխարեն յուրացնել «Երազ» ավտոֆուրգոնների և «Ռաֆ» միկրոավտոբուսների հետևի և առջևի կամրջակների արտադրությունը՝ տարեկան 50—60 հազար կոմպլեկտ քանակով, որ տնտեսական տեսակետից լիովին կարդարացնի իրեն: Այդ համոզմանն են նաև ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրությունում: Կարծում ենք, իրավացի են այն մասնագետները, որոնք հարց են հարուցում, որպեսզի ավտոգործարաններն զբաղվեն նաև անհրաժեշտ քանակությամբ պահեստամասերի և ագրեգատների հայթհայթմամբ, ինչպես դա հաջող կատարում է Վոլգյան ավտոգործարանը:

Վերոհիշյալ հանգամանքները հուշում են, որ, հավանաբար, մոտակա տարիներին ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրությունը կվերացնի պահեստամասերի արտադրությունն ավտոպահեստամասերի մասնագիտացված ձեռնարկություններում՝ դրանց արտադրությունը փոխադրելով ավտոմոբիլային գործարաններ:

Այսպիսով, հնարավոր կլինի ոչ հեռավոր ապագայում Երևանի ավտոգործարանում տարեկան թողարկել մի քանի անգամ ավելի տարբեր մոդելների ավտոֆուրգոն:

## ԱՎՏՈԲԵՌՆԻՉՆԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Ավտոբեռնիչների արտադրությունը մեր հանրապետությունում կազմակերպվել է 1960 թ., Երևանի ավտոպահեստամասերի գործարանի արտադրամասերից մեկի բազայի վրա, որն ուներ մինչև 3 հազար քմ արտադրատարածք: Նրա թողարկած երկու տոննա բեռնատարողությամբ ավտոբեռնիչների շահագործումը երկրի տարբեր քաղաքներում ցույց տվեցին այդ մեքենաների բացառիկ օգտակարությունը երկաթուղային կայաններում, օդանավակայաններում և այլուր:

Նշված մեքենաների առաջին օգտագործողներից է Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանը: Տարեցտարի մեծանում է այդ գործարանի թողարկած ավտոբեռնիչների պահանջարկը, քանի որ մեկ այդպիսի մեքենայի օգտագործումը մինչև 15 բանվորի ազատում է ծանր բեռների բեռնման-բեռնաթափման չափազանց աշխատատար և ոչ արտադրողական աշխատանքից:

Ձեռնարկությունն անընդհատ կատարելագործում է մեքենայի կոնստրուկցիան, արդեն վերացվել են թողարկված առաջին մեքենաներում եղած թերությունները: Կոլեկտիվն այժմ արտադրում է այնպիսի բարձրորակ ավտոբեռնիչներ, որոնք կարելի է արտահանել արտասահման:

Գործարանը պատրաստել է մեկ տոննա բեռնաբարձությամբ ավտոբեռ-



նիչների նմուշներ, որոնց արտադրությունը կսկսվի 1975—1976 թթ.: Ձեռնարկությունը պետք է յուրացնի նաև նոր տեսակի բեռնաբարձիչ սարքերի արտադրությունը, որը մեծ չափով կավելացնի տարբեր բեռների համար այդ բեռնիչների կիրառումը,

Հաշվի առնելով երկրի ժողտնտեսության համար այդպիսի մոդելների ավտոբեռնիչների արտադրության մեծացման խիստ անհրաժեշտությունը, 1974—1976 թթ. Երևանում, Ջրվեժի շրջանում պետք է կառուցվի ավտոբեռնիչների նոր խոշոր գործարան՝ տարեկան 6 հազար մեքենա կարողությամբ: Նախագծային աշխատանքներն ավարտված են, և շինարարությունն անցյալ տարի սկսվել է: Սակայն, չնայած սահմանված կարճ ժամկետներին, 1974 թ. շինարարությանը հատկացված միջոցները (1.200 հազար ռուբլի գումարով) դանդաղ են իրացվում, որն սպառնում է գործարանի՝ 1976 թ. գործարկմանը:

## ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Ավտոմոբիլային արդյունաբերության հետագա զարգացման համար ընդարձակ ծրագիր է մշակվում հեռանկարային պլանով: ՍՍՀՄ արվտոարդյունաբերության մինիստրության ու մեր հանրապետության համապատասխան մարմինները նախատեսում են 1976—1990 թթ. բանող գործարանների ընդլայնման հետ միաժամանակ կառուցել ավտոմոբիլային լապտերների գործարան՝ տարեկան տասնյակ մլն ռուբլու արտադրակարողությամբ: Այդպիսի ձեռնարկության կառուցումը մեր հանրապետությունում հիմնավորված է այն բանով, որ Հրազդանի շրջանում կավահողի մեծ պաշար կա, որը լապտերների հախճապակյա կորպուսի հիմքն է:

1978—1980 թթ. նախատեսվում է իրագործել տեխսպասարկման մի քանի հատուկ կայանների և ավտոմոբիլային պոլիգոնի Հարավային փորձնական կայանի, որպես ՆԱՄԻ-ի (միութենական գիտահետազոտական փորձարարական ավտոմոտորային ինստիտուտի ավտոպոլիգոնի մասնաճյուղ) շինարարությունը:

ՆԱՄԻ-ի կենտրոնական պոլիգոնը գործում է Մոսկվայի մարզի գոտում՝ Դմիտրովո քաղաքի մոտակայքում և գիտահետազոտական խոշոր կենտրոն է՝ ավտոմոբիլների, շարժիչների և այլ ագրեգատների նոր նմուշների փորձարկման համար: Առանց այդ պոլիգոնի հավանության ոչ մի նոր մեքենա կամ ագրեգատ չի կարող արտադրության հանձնվել:

Հարավային ավտոմոբիլային պոլիգոնն ստեղծվում է ավտոմոբիլների փորձարկման համար: Փորձարկվում են արևի ռադիացիայի երկարատև ներգործությունը, փոքր խոնավության բարձր ջերմաստիճանի և օդի ուժեղ փոշոտվածության ներգործությունը: Մի խոսքով, ուսումնասիրությունները կապված կլինեն երկրի հարավային շրջաններում ավտոտրանսպորտի աշխատանքի յուրահատուկ պայմանների հետ, կփորձարկվի առանձնապես շոգ երկրներ արտահանվող սովետական ավտոմոբիլային տեխնիկան: Հարավային պոլիգոնում կփորձարկվեն սնուցման, սառեցման, յուղման և օդի մաքրման սիստեմները: Այստեղ կգնահատվեն վարորդի աշխատանքի պայմանները, կհետազոտվեն բարձր ջերմաստիճանի և արևի ռադիացիայի ներգործությունը ռետինե, պլաստմասսայե և այլ շինվածքների, ոչ մետաղյա նյութերի, ներկերի, ծածկերի վրա, ինչպես նաև կստուգվի ավտոմոբիլային տեխնիկայի հանգույցների ու ագրեգատների ընդհանուր աշխատունակությունը:

Ավտոմոբիլային նոր պոլիգոնի գործադրումը հնարավորություն կընձեռնի կրճատելու ավտոմոբիլային տեխնիկայի նոր նմուշների փորձարկումների ժամկետները երկու պոլիգոնների (Դմիտրովյան և հարավային) զուգահեռ աշխատանքի ու հարավային պոլիգոնում ձմռանը որոշակի ծավալի փորձարկումներ կատարելու հաշվին:

Ավտոմոբիլաշինության արտասահմանյան փորձը բնութագրվում է միջին,

հարավային և հյուսիսային կլիմայական պայմաններում պոլիգոնների ստեղծմամբ (Ֆորդ, Ջեներալ-մոտորս, Մերսեդես-բենց և այլն), պոլիգոններ, որտեղ կատարվում է ավտոմոբիլի յուրաքանչյուր նոր մոդելի մշակումը։

Հարավային պոլիգոնի բազայի վրա կանցկացվեն հատուկ վազքային փորձարկումներ՝ տարբեր տեսակի ճանապարհներով, և նոր, մոդեռնացված ավտոմոբիլային շինվածքները փորձնական շահագործման կենթարկվեն երկրի հարավային ու լեռնային շրջաններում։ Կկատարվեն երկրի հարավային շրջանների յուրահատուկ պայմաններում ավտոմոբիլային տեխնիկայի շահագործման վերաբերյալ տվյալների հավաքում և սիստեմավորում։ Հարավային պոլիգոնում սկզբնական շրջանում պետք է կառուցվեն. տրեկ՝ ավտոմոբիլների արագությունը փորձարկելու համար, գետաքարե ճանապարհ՝ ամրությունը փորձարկելու, հատուկ ճանապարհներ՝ կառավարման, բարեհարմարության և այլ փորձարկումների համար, լաբորատորա-արտադրական կորպուս, հյուրանոց, բնակելի տուն, էներգետիկ և սանտեխնիկական կառույցներ։

Հետագայում պետք է նախատեսվեն պոլիգոնի օբյեկտների ճանապարհային ցանցի ընդլայնման հնարավորություններ։ Այդպիսի պոլիգոնի ստեղծումը, ըստ էության, մեր հանրապետության ավտոմոբիլաշինության մեջ գիտա-հետազոտական և փորձարարական աշխատանքների առաջին քայլն է։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը շատ ջանքեր են ներդնում հանրապետությունում ավտոմոբիլային արդյունաբերության հետագա զարգացման նպատակով։ Ավտոմոբիլաշինարարները պետք է իրենց հերթին ոչինչ չխնայեն մեզ մոտ արդյունաբերության այդ առաջատար ճյուղի նվաճումները բազմապատկելու համար։

# ԲԱՆԻՄԱՑՈՒԹՅՈՒՆ, ԿՐԿԻՆ ԲԱՆԻՄԱՑՈՒԹՅՈՒՆ

Հ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Երևանի Օրջոնիկիձեի շրջանի արդյունաբերական ձեռնարկություններից
15-ը պատկանում են թեթև, սննդի, կաթի-մսի և տեղական արդյունաբերության մինիստրություններին։

Շրջանի ուսումնասիրված ինքնուրույն բալանսով տասը ձեռնարկություն-
ներից ութը կատարել են թողարկվող արտադրանքի ծավալի 1974 թ. տասն
ամսվա իրենց առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավո-
րությունները։

Հնգամյա պլանով նախատեսված բնագծին հասել և երեք տարվա պլա-
նային ցուցանիշները կատարել են Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի, մսի
կոմբինատի, փորձնական նորոգման—մեխանիկական գործարանի, կոշիկի
ֆաբրիկայի կոլեկտիվները։

Հատկապես արժանի է շեշտել մսի կոմբինատի կուսկազմակերպության և
տնտեսական ղեկավարության դրական աշխատանքը։ Կոմբինատը 1973 թ.
հնգամյա պլանի արտադրության ծավալն ընդլայնել է 15,7 տոկոսով։ Կատար-
վել են նաև տեխնիկա-տնտեսական մյուս ցուցանիշների պլաններն ու կոնտ-
րոլ թվերը։ Արտադրության ծավալի նշված աճն ամբողջությամբ ապահովվել է
աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Ուսումնասիրման ընթացքում մսի կոմբինատի կոլեկտիվը, որն ստանձնել
էր 500 հազար ռուբլու հանդիպական պլան (ամբողջ տարվա համար), ստանձ-
նեց ևս 500 հազար ռուբլու։ Հանդիպական պլանների կատարողականը տասն
ամսում կազմեց 2 մլն 516 հազար ռուբլի։

Լավ արդյունքների են հասել նաև Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի
կուսկազմակերպությունն ու տնտեսական ղեկավարությունը։ Ֆաբրիկան
1973 թ. հնգամյակի կոնտրոլ թիվը (արտադրության ծավալի), գերազանցել է
811 հազար ռուբլով կամ 8,5 տոկոսով կրճատվել են բանվորական ժամանա-
կի կորուստները և կադրերի հոսունությունը։ Օգուտների պլանը միայն
1973 թ. գերակատարվել է 57,7 հազար ռուբլով։

Հնգամյակի ցուցանիշներից ետ է մնում թեթև արդյունաբերության ձեռ-
նարկություններից կարի № 3 ֆաբրիկան։ Այն ի վիճակի է կատարելու իր ար-
տադրական պլանը և փակելու հնգամյակի ճեղքվածքը։

Անհրաժեշտ է նշել, որ 1973 թ. ֆաբրիկան 15 մլն 704 հազար ռուբլու
տարեկան պլանի դիմաց թողարկել է 16 մլն 45 հազար ռուբլու արտադրանք,
իսկ 1974 թ. պլանավորված էր 14 մլն 980 հազար ռուբլի։ Ֆաբրիկայի կոլեկ-
տիվը, պլանից դուրս ստանձնած տարեկան 150 հազար ռուբլու արտադրանքի
սոցիալիստական պարտավորություններից բացի, լրացուցիչ վերցրել էր ևս 60
հազար ռուբլու պարտավորություն։

Համեմատաբար վատ է վիճակը Սովետաշենի կոշիկի ֆաբրիկայում, ուր
գործում է մեկ հերթափոխ։ Աշխատատար պրոցեսների միայն 54,3 տոկոսն է

գիտական հանձնաժողովներ, որոնք հնարավորություն կընձեռեին շրջկոմին՝ տեղում վերլուծելու տվյալ ձեռնարկության տնտեսական գործունեության վիճակը։

Ուսումնասիրված ձեռնարկություններից ոչ մեկում կազմված չէր սոցիալ-տնտեսական, արդյունաբերության զարգացման հեռանկարային պլան։ Չէին զբաղվում կադրերի պատրաստման աշխատանքներով, որոնց նախաձեռնումը պետք է լինի տեղի ղեկավարության և շրջկոմի առաջնահերթ խնդիրը։

Խոսելով թերությունների մասին, միաժամանակ պետք է նշել, որ շրջկոմն զգալի աշխատանք է տարել ձեռնարկությունների կոլեկտիվների մոբիլիզացման, հնգամյա պլանների ժամկետից շուտ և անթերի կատարման համար։ Մսի կոմբինատի, կարի № 3, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկաների, պահածոների գործարանի կուսկազմակերպությունների օրինակելի փորձը կարելի է մասսայականացնել նաև մյուս ձեռնարկություններում։ Շրջկոմը պետք է ավելի շատ կոնկրետ օգնություն ցույց տա կուսկազմակերպություններին։

Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ մինիստրությունների և սովետական, կուսակցական ղեկավար օրգանների որոշակի օգնության դեպքում ձեռնարկությունները ռեալ հնարավորություններ ունեն փակելու հնգամյա պլանի ճեղքվածքը և ապահովելու 1975 թ. նախատեսված արտադրական մակարդակը։

Մեր ստուգումները վկայում են, որ կուսակցության մշակած հոյակապ ծրագրի պրակտիկ կենսագործման որոշիչ գրավականը բանիմացությունն է և դարձյալ բանիմացությունը։



# ՊՈՐՏՈՒԳԱԼԻԱՆ ՆՈՐ ՈՒՂԻՈՎ

Վ. ՎԼԱԴԻՄԻՐՈՎ

Եթե Պորտուգալիայում ֆաշիստական ռեժիմի տապալման նախօրյակին՝ 1974 թվականի ապրիլի 25-ին, որևէ մեկը փորձեր հարց տալ, թե Արևմտյան Եվրոպայի պետություններից որում են հասունանում այնպիսի փոփոխություններ, որոնց հետևանքով կառավարության մեջ կմտնեն կոմունիստներ, հավանաբար, քչերը կտային այդ երկրի անունը։ Գրեթե կես դար շարունակ Պորտուգալիան Հարավ-Արևմտյան Եվրոպայում ռեակցիայի ու ֆաշիզմի միջնաբերդն էր և Աֆրիկայում գաղութատիրության հենարանը։ Բայց հենց այստեղ էր, որ ամենազգալի հարվածը հասցվեց ժամանակակից ֆաշիզմին։

Արևմուտքում գտնվեցին ոչ քիչ թվով սկեպտիկներ, որոնք կանխագուշակում էին, թե հեղափոխական պրոցեսը Պորտուգալիայում հեռանկարներ չունի, քանի որ երկրում, իբր. պայմաններ չկան դրա զարգացման համար։ Բայց արդեն անցել է կես տարի այն ժամանակից, երբ Պորտուգալիան թևակոխել է նոր ուղի։ Այդ ժամանակաընթացքում շատ բան է արվել դեմոկրատացման, ֆաշիստական կարգի մնացորդների վերացման, էկոնոմիկայի առողջացման բնագավառում, ինքնորոշման և անկախության իրավունք է վերապահված Պորտուգալիայի նախկին բոլոր գաղութային տիրույթների ժողովուրդներին, պաշտոնապես ճանաչվել է Գվինեա-Բիսաուի հանրապետությունը։

Սա, իհարկե, չի նշանակում, թե երկիրը դժվարություններ չի կրում, մասնավորապես էկոնոմիկայի բնագավառում, թե ռեակցիան արդեն ցած է դրել զենքը կամ նոր ռեժիմի ուրվագծերն ընդունել են վերջնական ձևեր։ Եվ, այնուամենայնիվ, արդեն այժմ կան ոչ քիչ տվյալներ, որոնք հնարավորություն են տալիս բավական հստակ վերլուծելու այն պատճառները, որոնցով պայմանավորվեցին Պորտուգալիայում կատարված փոփոխությունները, և գնահատելու իրադարձությունների հնարավոր զարգացման հեռանկարները այդ երկրում։

### ԻՆՉՊԵՍ ԱՅԴ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ

Ինչպես հայտնի է, Տոմաշ-Կաետանոյի ռեժիմի տապալման գործում վճռական դեր կատարեց «Զինված ուժերի շարժումը», կամ, ինչպես այլ կերպ այն անվանում են, «Կապիտանների շարժումը»։ Մինչև այդ շարժման դուրս գալը ընդհատակից նրա մասին գրեթե ոչինչ հայտնի չէր ոչ Պորտուգալիայի ժողովրդական լայն զանգվածներին, ոչ էլ, անգամ թերևս, պորտուգալական ամենազոր գաղտնի ոստիկանությանը՝ ՊԻԴԵ-ին (Կաետանոյի իշխանության գլուխ անցնելուց հետո այն սկսեցին անվանել Անվտանգության գլխավոր վարչություն՝ ԴԺՍ)։

Մինչդեռ այդ շարժումը, որի մեջ մտնում էին միջին կարգի ավելի քան 200 սպաներ (այստեղից էլ նա սկզբում ստացավ իր անվանումը), ձևավորվել էր դեռ անցյալ տարի և ամենայն մանրամասնությամբ պատրաստվում էր վճռական հարված հասցնելու ֆաշիստական ռեժիմին։

Ապրիլի 25-ի հեղաշրջումն այն երկարատև պրոցեսի գագաթնակետն էր, որի զարգացումը որոշվում էր այնպիսի գործոններով, ինչպիսիք են՝ ֆաշիստական ռեժիմի ընդհանուր

ճգնաժամը, տասներեք տարվա գաղութային պատերազմի տնտեսական ու քաղաքական հետևանքները, պորտուգալական ֆաշիզմի ու գաղութատիրության միջազգային դատապարտումն ու մեկուսացումը, դեմոկրատիայի համար, շահագործման, թանկության, գաղութային ավանտյուրաների դեմ, ինչպես նաև Գվինեա-Բիսաուի, Անգոլայի և Մոզամբիկի ազատագրական շարժման հաղթանակի համար իր ավանգարդի՝ Պորտուգալիայի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ պորտուգալական ժողովրդի մղած պայքարի լայն թափը:

«Զինված ուժերի շարժման» ելույթի հաջողությունը և այդ հաջողության հետագա զարգացումը հազիվ թե հնարավոր լինեին առանց ժողովրդական լայն զանգվածների աջակցության: Հեղաշրջման պահին Պորտուգալիայում թաքնված ձևով հասունանում էր ամենասուր ներքաղաքական ճգնաժամ, հարաճուն տեմպերով կուտակվում էր հեղափոխական պոտենցիալը: Ֆաշիստական ռեժիմը զրկվել էր մասսայական բազայից և համաժողովրդական ատելություն էր հարուցում:

Այդ ատելությունը միանգամայն հիմնավորված էր: Պորտուգալացիների կենսամակարդակը, ինչպես գրում է ֆրանսիական «Մոնդ դիպլոմատիկ» ամսագիրը, ամենացածրն է ամբողջ Եվրոպայում: Տնտեսական համագործակցության և զարգացման կազմակերպության տվյալներով, այն երկու անգամ ավելի ցածր է նույնիսկ հարևան Իսպանիայի կենսամակարդակից: Մասնավորապես, յուրաքանչյուր բնակչին ընկնող ամենամյա միջին եկամուտը կազմում է 717 դոլար: Պորտուգալացիների 35 տոկոսը կարդալ ու գրել չգիտե:

«Տնտեսական այս ծայր տվյալները,— ընդգծում էր «Մոնդ դիպլոմատիկ» ամսագիրը,— դրամատիկորեն են բնութագրում այն երկրի սոցիալ-տնտեսական իրականությունը, որն իրեն հայտարարում էր «քրիստոնեական Արևմուտքի հոգևոր արժեքների» տեր և «անմահ Պորտուգալիայի տիեզերական քաղաքակրթության պաշտպան»:

Պորտուգալիայում առանց վերահսկողության տնօրինություն և կամայականություն էր անում քաղաքական ոստիկանությունը՝ ֆաշիստական ռեժիմի տիրապետության գլխավոր գործիքը, որն իշխանության ղեկի մոտ մնում էր ոստիկանական դաժան ռեպրեսիաների օգնությամբ միայն: Երկրում հաճախ հայտարարվում էին «տագնապներ», հայտարարվում զինված ուժերի մարտական պատրաստության վիճակ: Բանակն անգամ ենթարկվում էր սիստեմատիկ «զտումների»:

Ճնշված երկրում տիրող ոստիկանական դաժան տեռորին ու հալածանքներին, ժողովրդի դժգոհությունը գնալով ավելի հաճախ էր արտահայտվում բացահայտ ելույթներով: Պորտուգալիայում թափ էր առնում բանվոր դասակարգի գլխավորած մասսաների հուժկու շարժումը, որը փաստորեն ընդգրկել էր բնակչության բոլոր խավերը:

Այնպիսի պայմաններում, երբ համաշխարհային լայն հասարակայնությունը դատապարտում էր պորտուգալական ռեժիմը, Տոմաշ Կաետանուի կառավարությունն աշխատեց ձևացնել, թե «լիբերալացնում է» ռեժիմը, միաժամանակ ձգտելով թույլ չտալ օպոզիցիոն ուժերի գործունեության ակտիվացում: Այսպես, 1973 թվականի ընտրությունների ժամանակ քվեարկությանը թույլատրված էր մասնակցել 1,8 միլիոն մարդու միայն, այն ժամանակ, երբ Պորտուգալիայի բնակչության ընդհանուր թիվը, ներառյալ նաև գաղութները, կազմում էր 23 միլիոն մարդ: Սակայն խնամքով ջոկված այդ ընտրողներից էլ, երբ օպոզիցիան հրաժարվեց իր թեկնածուներն առաջադրելուց, ֆաշիստական «Ազգային ժողովրդական գործողություն» կուսակցության թեկնածուների օգտին քվեարկեց, ոչ պաշտոնական տեղեկությունների համաձայն, քվեարկությանը մասնակցածների 25 տոկոսը միայն:

Տիրապետող ռեժիմի նկատմամբ համաժողովրդական ատելության իրադրությունը չէր կարող չանդրադառնալ նաև Պորտուգալիայի զինված ուժերի վրա և պատահական չէ, որ դրանք վճռական գործոն հանդիսացան Տոմաշ-Կաետանուի ֆաշիստական կառավարության տապալման գործում: Տասներեք տարվա զավթողական պատերազմը Աֆրիկայում ոչ միայն Պորտուգալիան հասցրեց տնտեսական ու քաղաքական սնանկության, այլև քայքայեց բանակը, որին ֆաշիստական կառավարողներն ամեն կերպ փորձում էին մեկուսացնել ժողովրդից: «Գաղտնի ոստիկանության և բանակային վերնախավի աչքերի առաջ,— գրում էր արևմտագերմանական «Շտեռն» ամսագիրը,— աճեց սպաների մի սերունդ, որոնց գնդապետների ու գեներալների հետ կապում էր միայն զինվորական համազգեստը»:

«Զինված ուժերի շարժման» մասնակիցները մեծ մասամբ Պորտուգալիայի բարձրագույն ուսումնական հաստատությունների շրջանավարտներ են, որոնց, կրթությունն ավարտելուց հետո, ուղարկում էին բանակ, զինվորական ուսումնարաններ, որից հետո նրանք ծառայությունն անցնում էին «անդրծովյան» տերիտորիաներում, այլ կերպ ասած, մասնակցում էին գաղութային պատերազմին Աֆրիկայում: Ֆաշիստական ռեժիմը զինվորական կադրերի սուր



կարիք էր զգում (գաղութներում պատերազմը վարում էր 160 հազարանոց բանակը), ուստի նա մոբիլիզացրել էր մարդկային բոլոր ռեսուրսները, այդ թվում և քաղաքացիական բարձրագույն կրթություն ստացած անձանց: Ինչպես ցույց տվեց իրադարձությունների ընթացքը, առավել ռեալիստորեն մտածող սպաները, որոնք կազմում էին «Զինված ուժերի շարժման» կորիզը, հանգեցին այն եզրակացության, որ բոլորովին անիմաստ ու անհեռանկար է շարունակել գաղութային պատերազմը և որ անհրաժեշտ է քաղաքական ելք գտնել «աֆրիկյան փակուղուց»:

Դժգոհությունը հասունանում էր նաև զինվորական զանգվածներում և սերժանտական կազմի շրջանում, որոնք իրենց վրա էին կրում գաղութային պատերազմի բոլոր դժվարությունները: Այդ մասին է վկայում, մասնավորապես, զանգվածային դասալքությունը գաղութային բանակից: Պատերազմական գործողությունների սկզբից մոտ 100 հազար պորտուգալացի զինծառայողներ դասալքել էին և կամ հրաժարվել հրամանները կատարելուց: Եվ միանգամայն բնական է, որ զինված ուժերի հրամանատարական կազմը վերջ ի վերջո դադարեց կառավարող ռեժիմի հենարանը լինելուց և իր նշանակալի մասով անցավ հակաֆաշիստական դիրքերը: Ինչպես գտնում են պորտուգալացի կոմունիստները, իր բոլոր առանձնահատուկ ու հակասական գծերով հանդերձ, «Զինված ուժերի շարժումը» պորտուգալական դեմոկրատական հեղափոխության պրոցեսի անբաժանելի մասն է:

Հասկանալի պատճառներով «Զինված ուժերի շարժման» սկզբնավորման ու նրա ընդհատակյա գործունեության մանրամասնությունները առայժմ լայն հրապարակայնություն չեն ստացել: Պորտուգալիայի ներկայիս պրեմիեր-մինիստր Վասկու Գոնսալվիշի խոսքերով, «ժամանակին կհրապարակվի «Զինված ուժերի շարժման» պաշտոնական պատմությունը և այն ժամանակ միայն կարելի կլինի դատել շարժման մեջ մեզնից յուրաքանչյուրի կատարած կոնկրետ դերի մասին»:

Ռեժիմը տապալելու գործողությունը շարժման ղեկավարները կշռադատել էին ամենայն մանրամասնությամբ: Դատելով պորտուգալական մամուլի հաղորդագրություններից, նրանք ունեցել են գործողությունների երկու պլան՝ հաջողության և անհաջողության դեպքերի համար: Ինչպես այժմ գիտենք, հաջողությունը ուղեկցեց «Զինված ուժերի շարժմանը», որին պաշտպանում էին ժողովրդական լայն զանգվածները: Երկու ոչ լրիվ օրում խորտակվեց այն ռեժիմը, որի հիմքերը շատերին անսասան էին թվում:

Որպես պետական իշխանության ժամանակավոր օրգան, «Զինված ուժերի շարժումը» ստեղծեց Փրկության ազգային խորհուրդ (ՓԱԽ), որի կազմի մեջ մտան յոթ գեներալներ, որոնք անմիջական մասնակցություն չէին ունեցել հեղաշրջմանը, բայց հայտնի էին իրենց օպոզիցիոն տրամադրություններով: ՓԱԽ-ի ղեկավար նշանակվեց գեներալ Անտոնիու դի Սպինոլան, որը շուտով դարձավ երկրի ժամանակավոր պրեզիդենտը:

Սպինոլան բարդ ու հակասական կենսագրության տեր մարդ է: Գաղութային պատերազմի սկզբին նա գնդապետի աստիճանով կամավոր կերպով պատերազմելու մեկնեց Անգոլա: Այնտեղ նա ստացավ բրիգադի գեներալի, իսկ ապա նաև բանակի գեներալի կոչում: 1968 թվականին նա նշանակվեց Գվինեա «նահանգի» նահանգապետ, որտեղ այն ժամանակ տեղի էր ունենում ամենադաժան պարտիզանական պատերազմ և որտեղ, հետևաբար, բանակը գտնվում էր առավել դժվարին դրության մեջ:

Սպինոլան համբավ ձեռք բերեց իր «Պորտուգալիան և ապագան» գրքով, որ նա գրեց Աֆրիկայից վերադառնալուց հետո: Այդ գիրքը, որը բավական շուտ հանվեց շրջանառությունից և առիթ ծառայեց Սպինոլայի հրաժարականի համար, մեծ ազդեցություն գործեց պորտուգալական հասարակայնության վրա: Առաջին անգամ Պորտուգալիայում գլխավոր շտաբի պետի տեղակալի հրամանատարական բարձր պաշտոն զբաղեցրած գեներալը համարձակվում է ի լուր ամբողջ աշխարհի հայտարարել, որ գաղութային պատերազմը չի կարելի շահել ռազմական ճանապարհով, որ մոտ է երկրի մարդկային ու ֆինանսական ռեսուրսների սպառման ժամը, որ Պորտուգալիան չի կարող այսուհետ ևս վարել իր արտաքին քաղաքականությունը՝ առանց շատ լուրջ հետևանքների վտանգի, նկատի ունենալով նրա ուժեղացող մեկուսացումը համաշխարհային ասպարեզում. որ անհրաժեշտ է արագ կերպով հաստատել խաղաղություն, ինքնորոշման իրավունք վերապահելով աֆրիկյան ժողովուրդներին:

Ֆաշիստական ռեժիմի նկատմամբ Սպինոլայի օպոզիցիան «Զինված ուժերի շարժման» ղեկավարներին դրդեց նրան առաջադրելու պետության ժամանակավոր ղեկավարի պաշտոնում: Պետք է ասել, որ այդ շարժման ղեկավարները ու մասնակիցները սկզբնական շրջանում նպատակ չէին դնում առաջատար դեր կատարելու երկրի քաղաքական կյանքում, առավել ևս՝ ղեկավար պաշտոններ գրավելու կառավարության մեջ: Նրանք իրենց խնդիրն էին հա-

տուգալական ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու պրոբլեմն է: Ներկայումս երկիրն ապրում է տնտեսական լուրջ դժվարություններ, որոնք հետևանք են զանազան օբյեկտիվ գործոնների՝ կապիտալիստական աշխարհի տնտեսական ու ֆինանսական անբարենպաստ կոնյունկտուրայի, ֆաշիստական դիկտատուրայից մնացած ծանր ժառանգության, գաղութային պատերազմի համար վատնվող մեծ ծախսերի (այդ պատերազմին հատկացվում էր ամբողջ պետական բյուջեի գրեթե կեսը):

Պրեմիեր-մինիստր Գոնսալվիշի խոսքերով, պորտուգալական էկոնոմիկան ապրիլի 25-ի նախօրյակին գտնվում էր քաոսային վիճակում: Ապրիլի վերջին վճարային բալանսի դեֆիցիտը կազմում էր ավելի քան 6 միլիարդ էսկուդո (1 դոլարն այժմ հավասար է մոտ 23 էսկուդոյի): Գների մակարդակը 1974 թվականի մարտին 30 տոկոսով գերազանցում էր 1973 թվականի մարտի գների մակարդակը:

Կան նաև տնտեսական դժվարությունների սուբյեկտիվ գործոններ. բանկերը և խոշոր կորպորացիաները չեն ցանկանում իրենց կապիտալները ներդնել երկրի էկոնոմիկայի մեջ և առանձին խոշոր կապիտալիստներ ու օտարերկրյա մոնոպոլիաներ փորձում են գաղտնի տնտեսական սաբոտաժ անել:

«Զինված ուժերի շարժման» տնտեսական ծրագիրը որևէ արմատական տնտեսական ռեֆորմ չի նախատեսում, այն փաստորեն չի դիպչում խոշոր կապիտալի շահերին, չի դնում բանկերը և հիմնական խոշոր ազգային ու օտարերկրյա ընկերություններն ազգայնացնելու հարցը: Մինչդեռ այդ ընկերությունները գլխավոր ու որոշիչ դեր են կատարում Պորտուգալիայի էկոնոմիկայի զարգացման մեջ, նրանց ազդեցությունը չափազանց մեծ է: Ինչպես գրում է «Մոնդ դիպլոմատիկ» ամսագիրը, «պորտուգալական տնտեսական կյանքում իշխում են յոթ մուլտիֆիրմաներ, որոնք հաճախ կապված են օտարերկրյա ֆիրմաների կամ բազմազգ ընկերությունների հետ»:

Օտարերկրյա կապիտալ ներդրողների մեջ առավել ուժեղ դիրքեր ունեն ԱՄՆ-ի, Անգլիայի, Բելգիայի և ԳՖՀ-ի մոնոպոլիստները: Դրանց բաժին է ընկնում Պորտուգալիայի օտարերկրյա բոլոր կապիտալ ներդրումների 75 տոկոսը: Ինքնին հասկանալի է, որ այնպիսի հզորագույն կոնցեռններին, ինչպիսիք են «Ջեներալ մոտորսը» կամ «ԻՏՏ»-ն, ոչինչ չարժե ժամանակավորապես դադարեցնել իրենց կապիտալ ներդրումները պորտուգալական էկոնոմիկայի մեջ և դրանով լուրջ վնաս պատճառել նրան:

Նոր ժամանակավոր կառավարությունը մշակում է «տնտեսական գործունեությունն աշխուժացնելու» ծրագիրը: Այդ ծրագիրը նախատեսում է այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք լիայի, Բելգիայի և ԳՖՀ-ի մոնոպոլիստները: Դրանց բաժին է ընկնում Պորտուգալիայի օտարթյան տրամադրումը մանր ու միջին ձեռնարկատերերին, համապատասխան երաշխիքների վերապահումը օտարերկրյա ներդրողներին, որպեսզի նրանց կապիտալ ներդրումները կարողանան ծառայել էկոնոմիկան «դինամիկ դարձնելու» գործին: Հարց է դրվում, որ Պորտուգալիան ստանա օտարերկրյա վարկեր ու փոխառություններ՝ իրեն ձեռնտու պայմաններով:

Ինքնին հասկանալի է, որ կառավարությունն առանձնապես մեծ ուշադրություն է նվիրում աշխատավոր զանգվածների և, ամենից առաջ, բնակչության ավելի քիչ ապահովված խավերի կենսամակարդակի բարձրացմանը: Պորտուգալիայի պատմության մեջ առաջին անգամ սահմանվել է աշխատավարձի նվազագույն մակարդակ՝ ամսական 3.300 էսկուդո: Սա, իհարկե, աշխատավորներին չի փրկում կարիքից, քանի որ ապրուստի մինիմումը կազմում է 6 հազար էսկուդո, սակայն մի լուրջ առաջընթաց քայլ է գոյություն ունեցած դրության համեմատությամբ: Պետական ծառայողների բոլոր կատեգորիաների աշխատավարձը բարձրացվեց, միջին հաշվով, 37,5 տոկոսով: Հայտարարվել է, որ շուտով միջոցներ են ձեռնարկվելու բազմանդամ ընտանիք ունեցողների գործազուրկների նպաստները բարձրացնելու, ինչպես նաև հաշմանդամների ու 65 տարեկանից ավելի ծեր անձանց կենսաթոշակներն զգալիորեն բարձրացնելու ասպարեզում:

Սակայն, ինչպես իր հայտարարությունների մեջ ընդգծում է ժամանակավոր կառավարությունը, ինքը ռեսուրսներ չունի բնակչության բոլոր անհրաժեշտ կարիքները բավարարելու համար, և եթե փորձեր, այնուամենայնիվ, բավարարել այդ կարիքները, ապա դա կհանգեցներ պետական բյուջեի վիթխարի դեֆիցիտի առաջացման, պետական պարտքի, ինչպես նաև առևտրական ու վճարային բալանսների դեֆիցիտի մեծացման:

Երկրի էկոնոմիկային որոշ թեթևացում կարող է բերել գաղութային պատերազմի ավարտումը Աֆրիկայում: Սակայն, ինչպես նախազգուշացնում է ներկայիս ժամանակավոր կառավարությունը, կպահանջվի ոչ քիչ ժամանակ, որպեսզի «աֆրիկյան փակուղուց» դուրս գալու արդյունքները տան իրենց պտուղները: Հավանաբար, երկու-երեք տարի հետո միայն Պորտուգալիան կկարողանա ազատ տնօրինել այն միջոցները, որոնք ծախսվում էին Աֆրիկայում մղվող պատերազմի համար:



Ստեղծված տնտեսական ծանր դրությունը կառավարությանը ստիպեց բարձրացնել որոշ սննդամթերքների, վառելիքի, քիմիական պարարտանյութերի և անասնակերի գները: Ժամանակավորապես սառեցվեց աշխատավարձը:

«Ժամանակավոր կառավարության պարտքն է,— ընդգծեց Վասկո Գոնսալվիշը, բացատրելով կառավարության այդ քայլը,— ժամանակին իրականացնել այն միջոցառումները, որ պահանջում է էկոնոմիկան առողջացնելու քաղաքականությունը, հրաժարվել դեմագոգիկ քաղաքականությունից և դրանով իսկ պայմաններ ստեղծել ապագա կառավարության գործունեությունները հեշտացնելու համար: Դա մի պրոցես է, որը բոլորից պահանջում է ցուցաբերել նվիրվածություն երկրին և հայրենասիրություն, որպեսզի բոլորը, ես կրկնում եմ՝ բոլորը, կարողանան դիմել մեծ զոհողությունների»:

Կառավարության տնտեսական միջոցառումներն ըմբռնումով դիմավորեցին երկրի աշխատավորական զանգվածներն ու հասարակայնությունը: Ինչպես նշում է «Դիարիո պոպուլար» թերթը, «կառավարությունը Պորտուգալիայի տնտեսական պրոբլեմների վրա ճակատային գրոհ է սկսել լիակատար անկեղծության և «դեմագոգիայի» բացակայության իրադրության մեջ»: Միաժամանակ այդ միջոցառումները ռեակցիոն ուժերն օգտագործեցին կառավարության, «Զինված ուժերի շարժման» դեմ հերթական հարձակումների համար:

## ԸՆԴԴԵՄ ՌԵԱԿՑԻԱՅԻ ՀԱՐՁԱԿՈՒՄՆԵՐԻ

Ինչպես գտնում են պորտուգալական կոմունիստները, ամենահրատապ պրոբլեմը պայքարն է ռեակցիայի դեմ, որը գլուխ է բարձրացնում: Այդ պայքարը, նրանց կարծիքով, պահանջում է միասնություն, կազմակերպվածություն և զգոնություն: Այն պահանջում է նաև ամրապնդել կապերը ժողովրդական ամենալայն զանգվածների հետ, որպեսզի վերջիններս գործեն գիտակցորեն և պատրաստ լինեն հանդես գալու ռեակցիոն ու ֆաշիստական ուժերի դեմ, փակեն նրանց ճանապարհը դեպի իշխանություն:

«Մենք ապրում ենք մեր երկրի կյանքի մի առանձնահատուկ ժամանակաշրջան,— օգոստոսի 16-ին գրել է «Ավանտե» թերթը, որն սկսել է հրատարակվել ֆաշիզմի տապալումից հետո:— Դա մի ժամանակաշրջան է, երբ բացվում են մեծ հեռանկարներ, բայց նաև մի ժամանակաշրջան, երբ վտանգներ են ծագում մեր նվաճումների համար»:

Ապրիլի 25-ի իրադարձությունների հետևանքով պարտություն կրելով քաղաքական ճակատում, ռեակցիան գործի է դնում դեռևս իր ձեռքին եղած տնտեսական լծակները: Արդեն մայիսի վերջին նա մանևրներ նախաձեռնեց տնտեսական ճակատում: Մի քանի խոշոր ընկերություններ իրենց նախաձեռնությամբ հայտարարեցին բանվորների աշխատավարձն անսովոր բարձր մակարդակի հասցնելու մասին. դա զգալիորեն գերազանցում է այն մակարդակը, որ կառավարության հետ համաձայնություն ձեռք բերելուց հետո պահանջում էին արհմիությունները: Աշխատավարձի նման բարձրացումը չէր համապատասխանում ազգային էկոնոմիկայի վիճակին, բայց միաժամանակ դա բանվորների շրջանում դժգոհություն էր սերմանում կառավարության տնտեսական քաղաքականության հանդեպ:

Ռեակցիոներների օգտին գործեցին նաև առանձին ձախ խմբավորումներ, որոնք Լիսաբոնում հրահրեցին մի շարք գործադուլներ. դրանք որոշ ժամանակով խափանեցին հասարակական տրանսպորտի աշխատանքը, հացի մատակարարումը քաղաքին: Այս կապակցությամբ կարելի է զուգահեռ անցկացնել ժողովրդական միասնության կառավարության օրոք Չիլիում կազմակերպված պրովոկացիոն գործադուլների հետ, որոնք նույնպես նպատակ էին դրել տնտեսական քաոս ստեղծել երկրում:

Կոմունիստական կուսակցության, արհմիութենական կազմակերպությունների և դեմոկրատական բոլոր ուժերի հաստատուն ու պարզ դիրքորոշումը, աշխատավորների քաղաքական բարձր գիտակցականությունը, զինված ուժերի զգոնությունը, ժամանակավոր կառավարության արտակարգ ու վճռական միջոցառումները հնարավորություն ընձեռեցին ետ մղելու ռեակցիայի առաջին կազմակերպված հարձակումը:

Վերջին ժամանակներս հակահեղափոխական ուժերը հաճախ դիմում են տնտեսական սաբոտաժի: Ինչպես հաղորդում է պորտուգալական մամուլը, մի քանի խոշոր ընկերությունների ու բանկերի վարչական խորհուրդներում բացահայտ ասում են, թե 1974 թվականը էկոնոմիկայում «անհաջող» տարի է, թե սկսվել է մի անկում, որն առաջացել է խոշոր ձեռնարկատերերի և նոր ռեժիմի միջև «հարաբերությունները պարզելու» հետևանքով:

Իսկ առայժմ, առանց «հարաբերությունների պարզման» սպասելու, խոշոր կապիտալը

## ԷՋԵՐ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

# «ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ» ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՐՑԵՐԸ «ՄՈՒՐՃ» ԱՄՍԱԳՐՈՒՄ

ԼԻԴԱ ԳԵՎՈՐԳՅԱՆ

*XIX դարի երկրորդ կեսը արգասավոր եղավ արևելահայ մամուլի պատմության մեջ: Հասարակական միտքը իրար ետևից սկսեցին ակոսել պարբերական օրգաններ, որոնք գաղափարական ամբողջ հոսանքներ ներկայացրին, հավակնեցին կուսակցությունների դեր կատարել: «Հյուսիսափայլ», «Կռունկ Հայոց աշխարհին», «Մեղու Հայաստանի», «Մշակ», «Փորձ», «Արձագանք», «Նոր-Դար», «Մուրճ» և այլ պարբերականների էջերում լայնորեն արտացոլվեցին հայ հասարակական մտքի բարդ ելևէջները, սոցիալ-տնտեսական տեղաշարժերը, որոնք 1861 թ. ռեֆորմի շնորհիվ կաշկանդումից ձերբազատված բուրժուական հարաբերությունների արդյունք էին:*

*Մամուլը հասարակական մտքի, գաղափարական պայքարի ամենազգայուն բարոմետրն է, տարեգիրը: Նրա էջերից ժամանակի բաբախումների ձայնն է գալիս, որոնք մեր առջև գծում են պատմական բարդ անցումների զիգզագները: Այսպես, եթե հայկական ազատամտականության ծննդյան վկայականը կարելի է տեսնել Ստ. Նազարյանի «Հյուսիսափայլ» ամսագրում, ապա Գրիգոր Արծրունու «Մշակ» թերթը ներկայացնում է նրա հասունության վավերագիրը. «մշակականությունը» հայկական բուրժուական լիբերալիզմի ցայտուն արտահայտությունն է, որի կորագիծը 90-ական թվականներից սկսած թեքվում է ցած. նա երերում է, տարանջատվում՝ գնալով դեպի աջ և դեպի ձախ: Եթե նրա աջ թևը, հասունացող բանվորական շարժումից վախեցած, դաշինք է փնտրում ռեակցիոն ուժերի հետ, ապա ձախ թևը ընդառաջ է գնում դեմոկրատական ուժերին: Հայ իրականության մեջ երկու թևերն էլ ստանում են իրենց ցայտուն արտահայտությունը, առաջինը՝ հանձին նոր «Մշակի», իսկ երկրորդը՝ Ավետիք Արասխանյանի նորաստեղծ «Մուրճ» ամսագրի:*

*Սկիզբ առնելով և սնվելով հայկական լիբերալիզմի ակունքներից, իր ընթացքի միջոցին «Մուրճը» ներառնում է իր մեջ հայ դեմոկրատական մտայնության վտակներ, դառնում այն կենտրոնը, որի շուրջը համախմբվում էին դեմոկրատ գրողներն ու հրապարակախոսները:*

*XIX դարի վերջին տասնամյակը հայ իրականության մեջ հատկանշվում է խոշոր արդյունաբերական կապիտալի տիրապետության հաստատմամբ, հայ պրոլետարիատի ձևավորմամբ և բանվորական շարժման սկզբնավորմամբ. սոցիալիստական ուսմունքների նկատմամբ բուռն հետաքրքրությամբ և մարքսիզմի տարածմամբ: Իբրև այդ տասնամյակի իսկական տարեգրություն «Մուրճում» կարելի է տեսնել պատմական այս իրադարձությունների ցայտուն արտացոլումը:*

*Ամսագրի լիբերալ-ռեֆորմիստական հիմնական ուղղությունն ամենից ավելի ամբողջական արտահայտություն է գտել տնտեսական հարցերին, երկրի*



*կարգացման հեռանկարներին նվիրված հոդվածներում, որոնց տնտեսագետ խմբագիրը մեծ տեղ էր տալիս: Կրթություն ստանալով Եվրոպայում և որդեգրելով բուրժուական տնտեսագիտական դպրոցներից մեկի՝ գերմանական պատմական դպրոցի պրոտեկցիոնիստական ուղղությունը, Արասխանյանը հանդես է գալիս որպես ազգային արդյունաբերության զարգացման ջատագով և բարձր զարգացած կապիտալիզմի մեջ լուծված է տեսնում ժամանակի բոլոր հակասությունները: Իտալոն ընտրելով ամեն եվրոպականը, Արասխանյանը ձգտում է «օբյեկտիվ» քննադատությամբ շտկել, բարեփոխել և իր իդեալին մոտեցնել նաև հայկական իրականությունը: Նա ցանկանում է հայ կապիտալիստների վրայից հանել ասիական տարազը և քաղաքակիրթ տեսք տալ նրանց:*

*Իբրև տնտեսագետ, Արասխանյանը հասկանում էր, որ ապագան խոշոր մեքենայական ու համակենտրոնացված արդյունաբերությանն է պատկանում և կոչ էր անում հայ կապիտալիստներին՝ միավորվել, տեխնիկական բարեփոխություններ մտցնել արտադրության մեջ, հետևել օտար կապիտալիստների օրինակին:*

*Ժամանակը հրամայաբար «Մուրճի» քննարկմանն է դնում մի հարց, որը օրակարգի մեջ մտցնելու նախապատվությունը պատկանում է «Մշակին». դա «բանվորական խնդիրն» է: Դարավերջում սոցիալական տեղաշարժերն արագ էին կատարվում. նախկին մշակների դասը «Մուրճի» էջերում կանգնում է որպես կազմակերպված դասակարգ, որին չնկատել, որի հետ հաշվի չնստել չէր կարելի: Եթե «Մշակը» ջանում էր «լուծել» բանվորական հարցը՝ մանր արտադրողներին պրոլետարիատի շարքերն ընկնելու վտանգից փրկելու միջոցով, ապա «Մուրճի» շրջանում արդեն պարզ էր նման ջանքերի ապարդյուն լինելը:*

*«Բանվորական խնդիրը» չի իջնում «Մուրճի» էջերից նրա գոյության ամբողջ ընթացքում: Սակայն սկզբից ևեթ ասենք, որ որքան էլ անկեղծ էին «Մուրճի» սրտացավությունը և մտահոգությունը նոր հասարակարգի արգանդից ծնված ընչազուրկ դասակարգի ծանր վիճակի նկատմամբ, ամսագրի էջերում «բանվորական խնդրի» արծարծումը դուրս չի գալիս կապիտալիզմի արատների քննադատության՝ խմբագրի մեկ անգամ գծած շրջանակներից, չի շոշափում կապիտալիստական հասարակարգի շահագործողական ամբողջ սիստեմը, այլ իր առջև դնում է սոսկ նրա տնտեսական դրությունը բարելավելու խնդիր՝ հենց «քննադատվող» հասարակարգի շրջանակներում: Այնուհանդերձ, փաստական այն հարուստ նյութը, որ ընթերցողի առջև էր դնում ամսագիրը, չէր կարող սնունդ չտալ աշխատավոր մասսաների դասակարգային ինքնաճանաչողությանը, հակառակ ամսագրի՝ ոչ թե փաստերի տրամաբանությունից բխող, այլ մտացածին դեղամիջոցների:*

*Բանվորական խնդրի վերաբերյալ հետաքրքրական հոդվածներով ամսագրում հանդես է եկել Գևորգ Ղարաջյանը (Արկոմեդ), որը «Մուրճի» ակտիվ և բեղմնավոր աշխատակիցներից էր: Նարոդնիկական-հնչակյան հովերով տարված երիտասարդ ուսուցիչը 80-ական թվականների վերջում երեսով շրջվում է դեպի մարքսիզմը և «դառնում հայ իրականության մեջ մարքսիզմի գաղափարների անդրանիկ սերմնացաններից մեկը» (Խ. Բարսեղյան, Մարքսիզմի տարածումը Հայաստանում, Երևան, 1967, էջ 195):*

*Հոդվածների վերնագրում առանձնացնելով մեկ հարց՝ «Բանվորների ապահովացման խնդիրը» («Մուրճ», 1894, № № 1, 2, 3, 4), Ղարաջյանն այն առիթ է դարձնում խոսելու ընդհանրապես բանվորական խնդրի վերաբերյալ. «Սոցիալական գիտությունը զբաղեցնող ամենանշանավոր խնդիրներից մեկը համարվում է ներկայումս «բանվորական» կոչված խնդիրը» («Մուրճ», 1894, № 1, էջ 101): Բանվորական խնդրի նկատմամբ ծագած այդ ուշադրությունը Ղարաջյանը բացատրում է «հասարակության լավագույն կազմվածքի համար իբրև առաջադեմ տարր» հանդես գալու նրա դերով: Նա ծաղրում է այն մարդկանց ապարդյուն ջանքերը, որոնք, չարիք համարելով նոր դասակարգի ծնունդը, ձգտում են ոչնչացնել այդ չարիքը զանազան դեկրետներով ու ծրագրերով. «Զվարճ է զարմանալ, եթե ասեմ որ այդ չարիքը անխուսափելի հետևանք է որոշ տնտեսական զարգացման, հետևանք մեծ կամ խոշոր արդյունագործության, և, որ գլխավորն է, ոչ մի հնարքով չի կարելի պրոլետարիատ ասված չա-*

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ԱԼ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԴՐԱՄԱՏՈՒՐԳԻԱԿԱՆ ՓՈՐՁԸ

Գ. Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

Ալ. Մյասնիկյանն իր պատանեկության շրջանում գրել է մի պիես՝ **Սրբապղծի ընտանիքը** վերնագրով: Այդ փաստի մասին առաջին անգամ ակնարկել է պատմաբան Ա. Մնացականյանը և մի քանի տողով փորձել գնահատել այն (տե՛ս Ա. Մնացականյան, **Ալեքսանդր Մյասնիկյան,** Երևան, 1955, էջ 11): Բայց ինչպես այժմ պարզվում է, Մյասնիկյանի նշված ստեղծագործությունը, որ ցայսօր ձեռագիր վիճակում մնացել է արխիվում, արժանի է ավելի լուրջ ուշադրության, մասնագիտական վերլուծության ու գնահատանքի:

Եվ ո՛չ միայն այն պատճառով, որ ապագա մարքսիստ-հրապարակախոսի մեզ հայտնի ամենավաղ գրված երկն է այդ, նրա գրական երախայրիքը, այլև նրա համար, որ շատ բան է ասում պատանի հեղինակի գրական-հասարակական տրամադրությունների մասին:

Երևույթն ինքնին ուշագրավ է. Նոր-Նախիջևանի թեմական դպրոցի նորավարտ տասնութամյա պատանին իր ուժերը փորձել է գեղարվեստական ստեղծագործության մի այնպիսի բարդ ժանրում, ինչպիսին թատերգությունն է, թե ե՛րբ և ի՛նչ հանգամանքների ազդեցությամբ է հղացել նա իր պիեսը, դժվար է ասել: Մի բան, սակայն, պարզ է. նրան դեպի դրամատուրգիան մղող ազդակներից են եղել այն ջերմ սերն ու հետաքրքրությունը, որ պատանի Մյասնիկյանը տածել է թատրոնի նկատմամբ: Եղբայրը՝ Սահակը, պատմում է, որ տակավին թեմական դպրոցում սովորելիս Ալեքսանդրը հանդես էր գալիս ո՛չ միայն զեկուցումներով, այլև մասնակցում էր երեկույթներին ու ներկայացումներին, երբեմն կատարում լուրջ դերեր, ինչպես, օրինակ, Օսեփի դերը՝ «Քանդած օջախում» և այլն («Սովետական Հայաստան» ամսագիր, Երևան, 1962, № 1, էջ 9):

Ուրիշ հուշագրողներ ևս հավաստում են պատանեկան տարիներին Մյասնիկյանի ցուցաբերած հակումն ու սերը թատրոնի նկատմամբ: Այդ նշանակում է, որ թատերասիրությունը նրա մոտ եղել է տիրական զգացում, որը և նրան մղել է դեպի դրամատուրգիան: Նվազ դեր չի խաղացել և այն, որ Մյասնիկյանն ունեցել է զգայուն և ակտիվ խառնվածք, կենսական երևույթներին արձագանքելու բուռն ձգտում: Նա ներքուստ պահանջ է զգացել արտահայտելու իր խոհերն ու ապրումները, վերաբերմունքը շրջապատող կյանքի նկատմամբ: 1904 թվականի օգոստոսին տեղափոխվում է Մոսկվա՝ ընդունվելու Լազարյան ճեմարանը: Հենց այդտեղ էլ Մյասնիկյանն ավարտում է իր թատերկը և խնամքով արտագրում մի ընդհանուր տետրի մեջ (85 էջ), որի առաջին էջում կարդում ենք.

ՍՐԲԱՊՂԾԻ ԸՆՏԱՆԻՔԸ
դրամա 4 գործ. 5 պատկերով
Հեղինակություն Ա. Մեսնիկյանի
Մոսկվա, 21 սեպտեմբերի
1904 թիվ

Արդ, ի՞նչ է ներկայացնում Մյասնիկյանի դրամատուրգիական փորձը, ո՞րն է նրա թեմատիկ-գաղափարական հիմքը և ինչպիսի՞ գեղարվեստական մարմնավորում է գտել այն:

Դրամայի նյութն առնված է ժամանակակից կյանքից, գործողությունը կատարվում է Թիֆլիսում: Հեղինակը ճշմարտացի պատկերում է դարասկզբի բուրժուական իրականության մի շարք երևույթներ, որոնք պայմանավորված են սոցիալական հակասություններով: Հենց այդ հակասությունների վրա էլ նա հյուսել է դրամատիկական կոնֆլիկտը, որի զարգացման ընթացքն արտացոլում է վերնախավերի ապականված բարքերը, նրանց շահամոլությունն ու բարոյական անկումը: Ուշադրությունը կենտրոնացնելով գլխավորապես Մարութովի ընտանիքի հետ կապված իրադարձությունների վրա՝ Մյասնիկյանը համարձակ մերկացնում է բուրժուական կենցաղի ու հոգեբանության նեխվածությունը և հանգում ժխտական հետևության: Նա բացահայտում է կապիտալիստական աշխարհի գիշատիչ էությունը, նրա մարդկանց սեփականատիրական ոգին, դրանով պայմանավորված ստոր գործելակերպը:



Այդ տեսակետից ուշագրավ է դրամայի գլխավոր գործող անձի՝ հարուստ երեսփոխան Մարկոս աղա Մարութովի տիպը, որը շատ կողմերով հիշեցնում է մեր ռեալիստական գրականության մեջ պատկերված բուրժուական աշխարհի վամպիրներին: Հարստանալու մոլուցքով տարված, նա ևս անցել է գողության ու ավազակության ուղի, հասել բարձր դիրքի ու դարձել չարիք շրջապատի, հասարակության համար: Փողապաշտությունից նա կորցրել է մարդկային խիղճը, ամեն քայլափոխում խաբում է, հարստահարում մարդկանց, կանգ չառնելով ոչ մի խարդախ միջոցի առաջ: Նրա կերպարը կերտելիս հեղինակը աշխատել է գործողության միջոցով, համակողմանի ներկայացնել բուրժուական բնավորության բացասական կողմերը: Ստեղծված դրություններն ու հարաբերությունները ցայտուն դրսևորում են Մարկոս աղայի բուն էությունը, որ նա հաճախ կարողանում է թաքցնել շրջապատից:

Դրաման սկսվում է Մարկոս աղայի և «հասարակ կապալառու» Սահակի երկխոսությամբ, որը տեղի է ունենում առաջինի բնակարանում: Սահակը եկել է «եկեղեցական տան» շինության համար իրեն պատկանող գումարը (5.000 ռ.) ստանալու: Ամեն ինչից երևում է, որ նա մի քանի անգամ է գնացել եկել, բայց նորից չի կարողանում ստանալ փողը, որովհետև կորցրել է պայմանաթղթերը: Այժմ, սակայն, իրադրությունն այնքան ծանր է, որ նա ստիպված է Մարկոս աղայից խնդրել գոնե 500 ռուբլի. աղյուս ու տախտակ ծախողները, ասում է նա, «...ինձ շատ են նեղում, ամեն րոպե փողոցում առաջս կտրելով՝ փող են պահանջում»:

Օգտվելով ստեղծված ծանր իրադրությունից՝ Մարկոս աղան, ինչպես հատուկ է իր դասակարգի մարդկանց, խոստանում է տալ պահանջված գումարը, մնացածը վճարել «երկու շաբաթից հետո»:

Այդ հույսերով ոգևորված՝ Սահակը հեռանում է, իսկ Մարկոս աղան ներքուստ հրճվում է այն գիտակցությամբ, որ իրեն հաջողվում է էժան գնով ձեռք բերել թե՛ «եկեղեցական տուն» կառուցողի համբավ և թե՛ 4.500 ռուբլի դրամ: Նրա մենախոսության մեջ անսքող մերկությամբ արտացոլված է խաբեական միջոցներով հարստացողի կենսահայեցողությունը: «Որքան կարող ես, ուրիշին զրկիր, միայն քո գրպանը թող պարարտանա»,— ասում է նա: Եվ գիշատչի այդ հոգեբանությունը փորձում է արդարացնել. ըստ նրա «աշխարհիս օրենքն է» ուրիշին զրկելն ու հարստանալը: Այդ մտայնությամբ էլ Մարկոս աղան սրել է իր ժանիքներն ու նետվել հասարակության մեջ՝ ուրիշներին կեղեքելու, նրանց հոշոտելու միջոցով հարստություն կուտակելու: «Քեֆ արա, գրպա՛ն. և այդ անմիտ Սահակների աչքը հանիր», — ասում է նա:

Այսպես է հյուսել պատանի Մյասնիկյանն իր դրամայի հիմքում ընկած կոնֆլիկտը, որը գնալով զարգանում ու ծավալվում է, ներառնելով նորանոր դեմքեր ու դեպքեր: Կողմերի հակադրությունը սրվում է. նույն գործողության վերջում, երբ Մարկոս աղան իրականացնում է իր փայփայած շահատենչությունը, վարպետորեն խաբում է և՛ Սահակին, և՛ նրան ուղեկցող տեր-Պետրոսին: Այս անգամ էլ նա հմտորեն օգտվում է եկվորների գինովցած վիճակից և իր թակարդի մեջ գցում նրանց: Նա հանում է նախապես պատրաստած մուրհակը, որը տեր-Պետրոսը կարդալով՝ հավանություն է տալիս: Մարկոսը Սահակին վճարում է իր խոստացած 500 ռուբլին: Բայց հենց նույն պահին, երբ նրանք վեր են կենում գնալու, ձևացնելով, թե մոռացել է մուրհակը ստորագրել տալ, Մարկոսը գրպանից հանում է նույնատիպ մի այլ թուղթ, ուր արդեն 500-ի փոխարեն գրված է 5.000 ռուբլի: Կարծելով, թե դա առաջին թուղթըն է, եկվորներն առանց կարդալու ստորագրում և ընկնում են փորձանքի մեջ:

Այժմ, երբ արդեն հասել է իր նպատակին՝ յուրացրել հսկայական գումար՝ Մարկոս աղան իրեն անպարտելի է կարծում և նույնիսկ ճամարտակում իր ազնվության մասին, որն, իբր, ժառանգել է հորից, և իրենից էլ պետք է անցնի որդուն: «Եթե իմ տեղը մեկ ուրիշը լիներ, Սահակին մի կոպեկ չէր վճարի, մինչև նա չներկայացներ իր կորցրած պայմանաթուղթը,— ասում է Մարկոսը:— Բայց ես այդ չարի, որովհետև ևս ուխտել եմ միշտ բարին գործելու և պետք է բարին գործեմ»: Ավելին, որպեսզի ցրի ամեն տարակույս և հավատ ներշնչի իր բարեբարության նկատմամբ, Մարկոսը նրանց առաջ ցուցարար ձևով պատռում է առաջին թուղթը (500 ռ.), հայտարարելով, թե իր համար ոչ մի նշանակություն չունեն փողն ու հաշիվը: Բայց դա սոսկ խաղ է, նրանց մոլորեցնելու միջոց, իր զոհերի վրա նոր ուժով գրոհելու համար: Այդ առավել ևս այն պատճառով, որ Մարկոսը լսել է, թե տեր-Պետրոսը բացասական կարծիք է հայտնել իր մասին և հավատացած է, որ հենց նա է վարկաբեկում իրեն, կամենալով խախտել ժողովրդի հավատն իր նկատմամբ:

Եվ ահա ներքուստ թշնամացած քահանայի հետ՝ Մարկոս աղան որոշում է նրա և Սահակի «ապուրը եփել»: Դրամայի հետագա ընթացքն ու աստիճանական զարգացումը համոզիչ ցույց են տալիս, թե իրոք որքա՜ն նենգ ու դաժան կեղեքիչ է Մարկոս աղան: Այժմ արդեն նա մեկուսի խոստովանում է, որ ինքը «չար ընտանիքի ծնունդ է» և իբրև այդպիսին ունակ՝ ամեն տեսակ չարագործության: Ինչե՛ր ասես, որ չի

անում Մարկոսը. բանտարկել է տալիս տեր-Պետրոսին, աստիճաններից ցած է գլորում Սահակի կույր մորը, որ եկել է բարեխոսելու քահանայի համար և օգնություն խնդրելու, նախօրոք կողոպտում է եկեղեցու ողջ հարստությունը և հանցանքը գցում տեր-Պետրոսի ու Սահակի վրա: Ի վերջո, սրան նույնպես բանտարկել է տալիս՝ վեց ամսով:

Այսպիսով, կուտակման մոլուցքով բռնված Մարկոսը չի խնայում նույնիսկ «տիրոջ տաճարը» և թալանելով՝ դառնում **սրբապիղծ:** Ուստի, բնավ զարմանալի չէ, որ նա իր որդու՝ Գրիշայի կողմից նենգորեն խաբված ու հարստահարված մշակներին, որ եկել էին բողոքելու, նահանգապետին է ներկայացնում որպես «քաղաքական կասկածավոր մարդկանց» և պահանջում խիստ պատժել: Ի դեպ, այս և ուրիշ պատկերներում հմտորեն ակնարկված է հայ վերնախավի և ցարական իշխանության բարձրաստիճան ներկայացուցիչների սերտ կապը, որը խարսխված է ո՛չ միայն նրանց սոցիալդասակարգային շահերի միասնության, աշխատավոր մասսաների հանդեպ տածած արհամարհանքի, այլև կաշառակերության վրա: Կաշառակերությամբ է Մարկոսը շահում դատարան մտած Սահակի գործը: Տեր-Պետրոսի ասելով «կաշառակեր ու փառասեր մարդ է» եպիսկոպոսը և, առհասարակ, «տեղն ընկած տեղը կարելի է մի քանի ռուբլով ամեն չարակամի ձեռքերն ու ոտքերը կապել»:

Բուրժուական իրականությանը հատուկ **այս** և ուրիշ արատներ դրամայում մերկացված են առավելապես Մարկոս աղայի առնչությամբ: Նա այնքան խորամանկ է ու նենգ, որ կարողանում է ճարպկորեն դիմակավորվել՝ նայած հանգամանքին. մերթ կեղծավոր քաղցրախոսում է, մերթ կատաղի հարձակվում: Հենց այդ պատճառով էլ նրան ճանաչելը դժվար է, եթե չասենք՝ անհնար: Շատերը, ինչպես և Սահակը, սկզբնապես, կարծում էին՝ նա «մի շատ բարի ու ճշմարիտ մարդ է», որի նմանը հազիվ թե գտնվի ամբողջ Թիֆլիսում: Բայց նրանք, ովքեր քիչ թե շատ շփվել ու գործ էին ունեցել Մարկոսի հետ, ինչպես, օրինակ՝ տեր-Պետրոսը, համոզված էին, որ նա «շատ խորամանկ մարդ է», որից պետք է զգուշանալ. «Այդ մարդը շատերի տունը քանդեց, շատ անմեղ արտասուք թափել տվեց՝ մինչև անգամ մի քանիսի մեռնելուն և կորստյան պատճառ դարձավ»:

Եվ ոճրագործությունների այդ շղթան աստիճանաբար բացվում է դրամայում, ուր հակադիր ուժերի բախումը լարման է հասնում երրորդ գործողության վերջում: Հայտնվում է խաբված, հարստահարված ու հանիրավի պատժված Սահակը: Վերջինս Մարկոս աղայի մոտ է եկել ոչ թե իր փողը պահանջելու, այլ, ինչպես ինքն է ասում՝ իր մարդկային իրավունքները վերականգնելու: Նա մերկացնում է սուրը և դիմելով տանտիրոջը՝ ասում. «Դուք սրան եք արժանի. սա կչորացնի այն արտասուքը, որ այսօր հեղեղի նման թափվում է իմ տան մեջ. այս սուրը կարող է ձեզ խելքի բերել»:

Եվ թափով հարձակվում է Մարկոսի վրա, բայց սա կնոջ, որդու և ծառայի օգնությամբ կարողանում է փրկվել վերահաս մահից. «Այստեղից էլ ազատվեցինք»,— ահից կծկված շշնջում է Մարկոսը:

Դրամայում, դժբախտաբար, անհրաժեշտ չափով չեն բացահայտված նրանց միջև եղած անձնական ընդհարման սոցիալական հիմքերը, որոնցով առավել ցայտուն կդառնար հյուսն Սահակի կերպարը: Վերջինս այդ դեպքում կբարձրանար տիպականի աստիճանի, մարմնավորելով հարստահարիչների դեմ ուղղված աշխատավորության ցասումն ու բողոքը:

Անհամեմատ հաջող են պատկերված հոր և որդու հակադրությունը, նրանց փոխադարձ ատելությունը, որի հիմքը բացարձակապես շահն է, փողը: Մինչ Մարկոս աղան խաբեությամբ ու խարդախությամբ հարստահարում է մարդկանց, կուտակում հարստությունը, որդին՝ փչացած ու այլասերված Գրիշան, շռայլորեն վատնում է այն, վարում ցոփ ու շվայտ կյանք: Հետաքրքրական է, որ այն ժամանակ, երբ հայրը մեթոդիկ ձևով ուզում է խաբել Սահակին, սեփականել նրա փողը, հայտնվում է որդին՝ ծնողներին խաբելու, փող կորզելու մտադրությամբ: Նա հայտնում է, թե ինքը գանձապահի օգնականի պաշտոն է ստանձնել երկաթուղային վարչության մեջ, կարճ ժամանակում «երկու աստիճան միասին» պիտի ստանա, կուրծքը զարդարի շքանշաններով. դրա համար հարկավոր է միայն երկու հազար ռուբլի, որ տանի վարչություն և վաղվանից գործի անցնի: Փողապաշտ ու գծուծ Մարկոս աղան նախ՝ հրաժարվում է, բայց հետո Գրիշայի ընկերոջ՝ Ֆրիդրիխ Շպիլլերի միջամտությամբ զիջում այդ գումարը: Ավելին, նա տալիս է նաև 200 ռուբլի, որպեսզի «կառավարչի համար մի լավ ընծա» գնեն:

«Դարդիման» ընկերներն անչափ ուրախ են, որ կարողանում են կոտրել Մարկոս աղայի համառությունը և փող ձեռք բերել, առանց որի նրանք մի քայլ իսկ անել չեն կարող: Գրիշան 200 ռուբլի տալիս է ընկերոջը՝ նրա ակտիվ աջակցության համար: Իսկ մնացած գումարով պատրաստվում իր սիրած Էմիլիայի բենեֆիսին: Ակնհայտ է, որ փողասիրությունը նրանց մեջ ևս մեռցրել է մարդկային, հարազատական զգացումները և դարձրել բիրտ եսամոլներ:

Հենց այդպիսին է Գրիշան. էժանագին հաճույքների հետևից ընկած՝ թողել է ուսանողական կյանքը (իր ասելով եղել է медик студент) և դարձել մակաբույծ: Նա փայփայում է հոր շուտափույթ մահվան հույսը, որ կարողանա անարգել վատնել նրա հարստությունը. «Ո՛հ, Շպիլլեր, եթե շուտով հայրս մեռներ... դու տես, թե այն ժամանակ ինչ երջանկություն ենք վայելելու ես և դու»: Գրիշան այնքա՜ն է տարված այդ մտքով, որ նույնիսկ երազում տեսել է, թե ինչպես հայրը «արկղների բանալիները» հանձնելով իրեն՝ ավանդել է հոգին. «բայց ափսոս, որ այդ ուրախալի դիպվածը րոպեական էր»,— ասում է նա և ավելացնում. «Ե՞րբ կհասնենք այն օրը, որ երազը կատարվի»:

Ոգեշնչված ընկերոջ փայփայած տենչով՝ Շպիլլերը նկատում է, որ այդ երազի իրականացումը կախված է միայն Գրիշայից. «...ամեն բան քեզնից է կախված»,— ասում է նա և առաջարկում անհապաղ գործի անցնել. այսինքն՝ սպանել հորը՝ Մարկոս աղային. «Նրա ժամանակը անցել է արդեն, թող գնա կորչի»,— եզրակացնում է Շպիլլերը և միաժամանակ պատրաստակամություն հայտնում օգնել ընկերոջն այդ քստմնելի գործում (բերել սպիտակ փոշի, որ աղի նման է և լցնել այն շիշը, որից Մարկոսը ամեն օր ռոմ է խմում): Տեսնելով Շպիլլերի ցուցաբերած ջանքն ու համարձակությունը այդ ուղղությամբ՝ Գրիշան նրան է հանձնարարում իր հոր սպանությունը:

Գրիշայի կերպարը կերտելիս հեղինակը մեծ ուշադրություն է հատկացրել նրա կապերին ու հարաբերություններին, որոնց ոլորտում առավել ցայտուն է դառնում այդ բարոյազուրկ երիտասարդի նկարագիրը: Նա ունի իր հարազատ շրջապատը՝ ի դեմս ժամանակի բուրժուական երիտասարդության, պագշոտ ու խենեշ կյանք են վարում նրանք երեկույթներում, անառակ կանանց շրջանում: Այդ առումով ուշագրավ է դրամայի երկրորդ գործողությունը, որ տեղի է ունենում հյուրանոցում: Այստեղ են Գրիշան, Շպիլլերը, Դոլմազովը, Ղազանչյանը, Մարգարիտը: Նրանք ներկա էին եղել Էմիլիայի բենեֆիսին, որի առիթով Գրիշան թանկագին նվերներ է մատուցել իր սիրուհուն: Թատրոնից այժմ եկել են հյուրանոց՝ զվարճանալու: Տարված Էմիլիայի խաղով՝ նրանք ոգևորված խոսում են դերասանուհու մասին: Քիչ հետո հայտնվում է ինքը՝ Էմիլիան՝ տխուր, անտրամադիր: Նախ՝ նա դժգոհում է թիֆլիսահայ հանդիսատեսներից, նրանց մեղադրում կոպտության ու գռեհկության մեջ, ապա՝ հայտնում, թե իբր հափշտակել են իր նվեր ստացած ապարանջանները: Դրանից ազդված, Գրիշան անմիջապես փող է տալիս նրան, որ ձեռք բերի կորցրածը, չտխրի: Բայց, ինչպես պարզվում է, դերասանուհու կողմից մի նոր խաղ էր այդ, երկրպագուից դրամ շորթելու համար: Այնուհետև Գրիշայի հաշվին սկսվում է շվայտ ընթրիք, երիտասարդներն անհագ խմում են, ապա անցնում թղթախաղի: Ի վերջո Գրիշան և Շպիլլերը հարբած քնում են Էմիլիայի սենյակում, ուր և դերասանուհիները քրքրում են նրանց գրպանները: Հետաքրքրական է նշել, որ Գրիշայի գրպանում նրանք գտնում են ընդամենը մի հարյուրանոց և մի նամակ, որի տակ գրված է. «քո թշվառացրած Աննա» ստորագրությունը: Դա, անշուշտ, նրա հերթական զոհերից է... Իսկ Շպիլլերին չի հաջողվում խուզարկել, որովհետև, ինչպես Էմիլիան է ասում՝ այդ «խորամանկ գերմանացին պառկել էր երեսն ի վար և դեռ ձեռքերն էլ գրպաններում էր դրել»:

Այսպիսի այլասերվածության տիղմի մեջ խրված փչացած հոգիները, որոնք ունակ չեն կյանքին որևէ բան տալու, միշտ կորզում են նրանից ինչ որ կարող են. «Ա՜յ, այսպես կխաբեն սրանց,— ասում է Էմիլիան Մարգարիտին,— կարծում են, թե մենք իրանց համար գժված ենք... ի՜նչ սիրահարություն, պլոկեցինք հո»:

Եվ, արդարև, այդ բանն անուղղակի զգում է իր խոսքերով ասած՝ «անզգամներին հյուր եկած» Գրիշան: Առավոտյան արթնանալով նա շատ է զարմանում, որ նախորդ օրը հորից ստացած 2.200 ռուբլուց գրպանում մնացել է ընդամենը 100 ռուբլի: Ե՞րբ, որտե՞ղ է ծախսել, չի հիշում:

Նույնքան տպավորիչ է նաև երրորդ գործողության առաջին տեսարանը, որ սկսվում է Գրիշայի և Շպիլլերի երկխոսությամբ: Գրիշան «դիվանի վրա թիկնած ծխում է»,— կարդում ենք ռեմարկում. ներս է մտնում Շպիլլերը, որը «անհանգստացած է», թե ինչու երեք օր է չի երևում ընկերը: Պարզվում է, որ այդ ընթացքում նա «երջանիկ ժամեր» է անցկացրել մի ֆրանսուհու հետ և նույնիսկ հափշտակված է նրանով: Բայց երբ Շպիլլերը մեկնում է նրան Էմիլիայի նամակը, որով վերջինս խնդրում է այցելել իրեն, Գրիշան անմիջապես մոռանում է ֆրանսուհուն և որոշում այցի գնալ դերասանուհուն: Իսկ դրա համար հարկավոր է միայն... փող:

Որտեղի՞ց գտնել այն:

Տեսնելով, որ հայրն այլևս փող չի տալիս, Գրիշան դիմում է մի նոր խորամանկության: Նա մշակներին խաբում է, թե ինքը ղեկավարում է ինչ-որ շինարարություն և յուրաքանչյուրից վերցնելով անձնագիրն ու 4—5 ռուբլի, խոստանում է երեք օր հետո գալ և նրանց

տանել աշխատանքի: Բայց օրեր են անցնում, և նա չի երևում: Դժվար չէ հասկանալ, որ այդ ընթացքում ևս նա «ոսկի ժամեր» էր անցկացնում Էմիլիայի հետ: Դա հաստատվում է նաև նրանով, որ մայրը հենց այդ օրերին պատահաբար որդուն գտնում է ոսկեվաճառի խանութում մի գեղեցկուհու (Էմիլիայի) հետ, որի համար ապարանջան էր գնում: Ի դեպ, նույն այդ կնոջ մատին Սոփիան տեսնում է նաև իր թանկարժեք մատանիներից մեկը. Գրիշան հայտարարել էր, թե կորցրել է այն:

Ձեխ կյանք վարող որդին հակասության մեջ է սեփական ընտանիքի հետ: Տնեցիներին խաբելով՝ նա վատնում է հոր հարստությունը, գողանում մոր զարդերը: Եվ, եթե այդպես է վարվում նա հարազատների հետ, ապա դժվար չէ պատկերացնել նրա դիրքը ուրիշների, թեկուզ մշակների հանդեպ: Բայց տվյալ դեպքում մեզ հետաքրքրողը որդու և հոր հակասությունն է, նրանց փոխադարձ թշնամանքը, որի հիմքը, ինչպես ցույց է տրված դրամայում, դարձյալ փողն է:

Վայելքի ու ցոփության անհագ ասպետը՝ Գրիշան, որ զուրկ է իդեալից ու հեռանկարից, ուզում է անվերջ մսխել ու շռայլել հոր հարստությունը: Իսկ դրան խանգարում է դրամապաշտ, ժլատ հայրը. «Ամեն օր փող է ուզում,— մենախոսում է Մարկոս աղան:— Մի՞թե ես փողը նրա համար եմ դիզում, որ նա աջ ու ձախ շռայլե... Ինչո՞ւ համար ես այսքան արյուն քրտինք թափեցի, այսքան չարություն գործեցի՝ փողի... Եվ իմ որդիս այսօր կամենում է նրան անխնայաբար վատնել: Գիտե՞ նա արդյոք, թե այդ հարստությունը քանի-քանի մարդկանց զոհերով է դիզված...»:

Իր իսկ խոստովանությամբ Մարկոսը «ուրիշների նման հիմարաբար Էջմիածնի կամ ընկերությանց» փող չի տալիս, որպեսզի իր մահից հետո «տարեկան մի անգամ հոգեհանգիստ կատարեն», ո՞ւր մնաց թե հանդուրժի որդու շռայլ ծախսերը: Փողապաշտությունը նրա մոտ մի այնպիսի տիրական կիրք է, որի մեջ լուծվում, կորչում են նույնիսկ հարազատական զգացումները: Այստեղից էլ հոր ու որդու միջև եղած փոխադարձ ատելությունը, որը գնալով խորանում և փոխվում է թշնամանքի, հանգեցնելով ծանր հետևանքների:

Այս հակադրությունն է, որ չի հասկանում Սոփիան և տանջվում է «երկու քարի»՝ ամուսնու և որդու արանքում:

Դրամայում հեղինակը կիրառել է հակադրության սկզբունքը: Դա արտահայտվում է ո՛չ միայն կերպարների բնութագրման, այլև հանգամանքների ու գործողությունների պատկերման մեջ: Այսպես, օրինակ, Սահակի մորը թաղելիս, երբ հուղարկավորների թափորն անցնում է Մարկոս աղայի տան առջևով և լսվում է նրա մահվան պատճառ հանդիսացողի հասցեին ուղղված անեծքը («Մարկոս աղա, քանդվի քո տունը, ինչպես մերը քանդեցիր, զավակիդ մահը տեսնես...»), նույն այդ պահին Գրիշան ծնողներին հայտնում է, որ ինքը նշանվել է մի դերասանուհու (Էմիլիայի) հետ և նրան երեկոյան հրավիրել է իրենց տուն:

Կյանքի հակադիր բևեռներ. մի ծայրում մահ, թաղում, մյուսում՝ հարսանիքի պատրաստություն, որը ներկայացված է դրամայի չորրորդ գործողության Ա. պատկերում: Այստեղ ևս բացահայտված են Մարկոս աղայի արհամարհանքը հասարակ մարդկանց (ծառաների, գինեվաճառի) նկատմամբ, նրա փառամոլությունը, որ միահյուսված է շահամոլությանը: Գինեվաճառ Հովակիմի այն հարցին, թե ինչո՞ւ հարսնացու է ընտրել «նեմկա»-ի, Մարկոսը թեև չի տեսել, գովաբանում ու երկինք է հանում նրան, չմոռանալով ավելացնել նաև. «թատրոնից 1.000 ռուբլի է ստանում, էլ ուրիշ ի՞նչ է հարկավոր...»:

Բայց ամենից անսպասելին այն է, որ երբ հյուրերը հավաքված երգում, պարում են և պատրաստվում արժանավայել ընդունելություն ցույց տալ հարս ու փեսային, դրսից լսվում է Գրիշայի աղաղակը: Քիչ հետո խելագարի պես ներս է թռչում նա ու հայտնում, որ Էմիլիան քաղաքից հեռացել է, թողնելով մի նամակ, ուր ասված է. «Իմ այստեղ մնալս կարող էր ինձ և քեզ զրկել կյանքից... Մնաս բարյավ մինչև հավիտյան...»:

Տպավորությունը ցնցող է. Գրիշան զայրույթից կորցնում է հոգեկան հավասարակշռությունը, ուշաթափվում: Մարկոս աղային այլ բան չի մնում անելու, քան շնորհակալություն հայտնելով հյուրերին՝ ասել. «Մեր հարսանիքը վերջացավ»:

Առավել ազդեցիկ ու ցնցող է դրամայի վերջավորությունը. հոգնած ու հյուծված Մարկոս աղան մենախոսում է՝ կատարված դեպքերի ազդեցությամբ: Նրա մենախոսությունը յուրատեսակ ինքնախոստովանություն է սեփական հանցանքների, չարագործությունների, որոնց բուն պատճառը հարստանալու մոլուցքն է: Ինքն իսկ խոստովանում է, որ զբաղվել է խեղճերի բերանից հացի պատառ խլելով, սեփական ձեռքերը շաղախելով անմեղների արյամբ. «Արդյոք ինձ պես մի հանցավոր, խարդախ ու չար մարդ եղե՞լ է աշխարհում և կամ պիտի լինի՞»:

Պարզվում է, որ եղել է և դա ոչ այլ ոք է, քան իր հայրը, որին սպանել է հենց ինքը՝ Մարկոսը: Այժմ նրան սպառնում է այն միտքը, թե իրեն էլ կարող է սպանել հարազատ որդին և դառնալ իր ժառանգորդը: Եվ, եթե իրերի տրամաբանական վախճանն այդ է, մտածում է Մարկոսը, ապա «ավելի լավ կլինի, որ վերջ դնեմ առաջ նրա կյանքին և հետո իմ: Այսպիսով թող փշրվի մեր կյանքի անիվը իր ծուռ ու ավերիչ ճանապարհի վրա»: Այլ կերպ ասած՝ հայրասպան Մարկոսը սեփական մեղքերի ծանրության տակ ցանկանում է դառնալ նաև որդեսպան, իսկ հետո՝ ինքնասպան: «Այո, հայրասպանը պետք է որդեսպան լինի, ապա ինքնասպան...»:

Բայց, ինչպես ասում են՝ ուրբաթը շաբաթից շուտ է գալիս. այն պահին, երբ Մարկոսն ատրճանակն ուղղում է որդուն, բայց պայթյուն չի լինում, Գրիշան մոլեգնաբար հարձակվում է հոր վրա և խեղդամահ անում նրան:

ԳՐԻՇԱ.—Սպանեցի... **(մոտենում է արկղին)**:

ՍՈՓԻԱ.— **(մտնելով դռան մոտ ուշաթափվում է)** — Ա՜խ...

ԳՐԻՇԱ.— **(Սկսում է արկղը բանալ)** — Փողե՜րը... **(զրկում է արկղը: Տեսարան)** — Փո՞ղ... **(տեսարան և վարագույրը հանդարտ իջնում է)**:

Այսպես է վերջանում պատանի Մյասնիկյանի դրաման, որը հնչում է որպես մեղադրական ակտ բուրժուական իրականության դեմ: Ֆինալային տեսարանն արտացոլում է ո՛չ միայն սրբապղծի ընտանիքի բարոյական անկումը, ընտանիք, ուր հարազատներն անգամ չեն խընայում իրար, այլև մերկ շահի կամ փողի վրա հիմնված հին հասարակության գազանային բարոյախոսությունը, որի էությունը «մարդը մարդուն գայլ» սկզբունքն է: Տվյալ դեպքում դրանով են ղեկավարվում թե՛ հայրը և թե որդին, որոնք կործանվում են գռեհիկ, էգոիստական շահերի բախման հետևանքով:

Հենց դրա մեջ է սույն դրամայի պատմականգրական արժեքը: Ռուսական առաջին հեղափոխության նախօրեին թեմական դպրոցի նորավարտ սան Ալ. Մյասնիկյանը անողոքաբար պատռում է տիրող դասակարգի դիմակը, ցույց տալիս դրա տակ թաքնված ոճիրները: Այդ իմաստով նա արձագանքում էր ժամանակի հայ առաջադեմ դրամատուրգիայի քննադատականմերկացնող ուղղությանը, որը հենց նույն տարում (1904 թ.) նշանավորվեց այնպիսի երկերով, ինչպիսիք են՝ «Պատվի համար» և «Ժայռ» դրամաները:

Մենք պատահաբար չհիշեցինք այդ գործերը, մանավանդ «Պատվի համար»-ը, որի հետ ընդհանրության որոշ եզրեր ունի Մյասնիկյանի գրական երախայրիքը, բայց դա արդյունք է ոչ թե ազդեցության, որ տվյալ դեպքում բացառված է, այլ միևնույն իրականության ճշմարիտ ընկալման, որ երկու դեպքում դրսևորվել է ընտանեկան ֆաբուլայի միջոցով, մասնավոր կյանքի պատկերմամբ: Անկախ իրենց սուբյեկտիվ հայացքների և ստեղծագործական հնարավորությունների ակնհայտ տարբերության, թե՛ փորձառու դրամատուրգը և թե՛ սկսնակ հեղինակը մերկացրել են բուրժուական հասարակության այլասերված բարքերը, ցուցադրել այն ներքին բախումներն ու հակասությունները, որոնք նրան տանում են դեպի անխուսափելի կործանում:

Այս է Մյասնիկյանի դրամայի բովանդակությունից բխող օբյեկտիվ հետևությունը, որ տրված է կենսական փաստերի գեղարվեստական հյուսվածքով: Իհարկե, դրաման զերծ չէ ակնհայտ թերություններից (չպատճառաբանված հանգամանքներ, որոշ կերպարների մակերեսայնություն, մելոդրամայի տարրեր և այլն), որոնք մասամբ արդյունք են ստեղծագործական անփորձության. չմոռանանք, որ այն գրված է 18-ամյա պատանու ձեռքով:

Եվ, չնայած դրան, այն այսօր էլ, յոթ տասնամյակ հետո, կարդացվում է հետաքրքրությամբ և ունի ճանաչողական արժեք: Նկարագրված գործողությունը լարված է, ընթանում է դիպուկ երկխոսություններով, երբեմն՝ հաջող ոճավորված մենախոսություններով: Հեղինակը հոգեբանական նուրբ դիտողություններով երևան է հանել գործող անձերից մի քանիսի (Մարկոս, Շպիլլեր, Գրիշա) ներաշխարհում կատարվող հակասական ապրումները, նրանց հոգին բզկտող խելահեղ կրքերը: Մերթ վայելքի, մերթ սարսափի պահին նրանք բարձրաձայն մտորում են, մենախոսում, դրանով իսկ բացահայտում իրենց ունեցած վերաբերմունքը երևույթների նկատմամբ: Դրան պետք է ավելացնել դրությունների ու տեսարանների տրամաբանական հաջորդականությունը, որի ընթացքում բացահայտվում են գործող անձանց բնավորությունն ու հոգեբանությունը: Նրանցից յուրաքանչյուրը, լինելով կոնկրետ միջավայրի ծնունդ՝ իր հերթին ազդում է ստեղծված դրության վրա և առաջ մղում գործողությունը:

Այս ամենը վկայում է, որ պատանի հեղինակը օժտված էր կենսական երևույթները դրամատուրգիական արվեստի հնարանքներով մատուցելու բացահայտ կարողությամբ:

---

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ ՌՈՒՍ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

Սովետահայ պատմագրությունը նշանակալի ներդրում է կատարել ռուս և հայ ժողովուրդների բարեկամության պատմության ուսումնասիրման բնագավառում: Լույս են տեսել մենագրություններ, Հանրապետության ԳԱ պատմության ինստիտուտի հրատարակած Հայ ժողովրդի պատմություն բազմահատորյակի 1, 4, 5, 7 և 8-րդ գրքերը, որոնցում համակողմանի ուսումնասիրված, բացահայտված են ռուս և հայ ժողովուրդների տնտեսական, քաղաքական, մշակութային կապերը: Բազմահատորյակի վերջին՝ 7 և 8-րդ գրքերում լուսաբանված են երկու ժողովուրդների դարավոր բարեկամության հարցերը, որոնք միանգամայն նոր որակ ստացան Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունից հետո:

Ռուս և հայ ժողովուրդների բարեկամությունը, տնտեսական կապերը դարավոր պատմություն ունեն: Սակայն դրանք ավելի խորացան XIX դարի ռուս-պարսկական, ռուս-թուրքական պատերազմների տարիներին: Այդ հետաքրքրական ժամանակահատվածի պատմության լուսաբանմանն է նվիրված պրոֆ. Ա. Մ. Պողոսյանի՝ Ռուս-հայ բարեկամության պատմությունից մենագրությունը:

Կռփվում է մարտական համագործակցություն (1806—1812 թթ. ռուս-թուրքական պատերազմը). այսպես է վերնագրված մենագրության առաջին գլուխը:

Անցյալ դարի սկզբներին միջազգային բարդ իրադրություն էր ստեղծվել՝ կապված Սև ծովի նեղուցների հետ: Ռուսաստանի համար կենսական նշանակություն ուներ Սև ծովի վրայով Միջերկրական ծով ելք ունենալը: Այդ էին թելադրում ամենից առաջ նրա քաղաքական-տնտեսական շահերը:

Հակառակ անգլո-ֆրանսիական գաղութարար պետությունների ոտնձգություններին, Ռուսաստանն իր դիրքերն ամրացրել էր Անդրկովկասում և օգնում էր բալկանյան ժողովուրդներին՝ թոթափելու թուրքական դարավոր ստրկության լուծը:

Ռուս-թուրքական 1806—1812 թթ. պատերազմի երկրորդ ճակատն անցնում էր Անդրկովկասի վրայով դեպի Արևմտյան Հայաստան: Հայ ժողովրդի կյանքում ստեղծվել էր նոր իրադրություն: Ռուսական զենքի հաղթանակով էր պայմանավորված Արևմտյան Հայաստանի ազատագրումը օսմանյան բռնակալությունից: Կովկասյան բանակը կռվում էր երկու ճակատով — մի կողմից՝ շահական Պարսկաստանի, մյուս կողմից՝ սուլթանական Թուրքիայի դեմ: XIX դարի սկզբի պատերազմների ողջ ժամանակաշրջանում Անդրկովկասի ժողովուրդները եռանդուն մասնակցում էին ռուսական բանակի ռազմական գործողություններին: Բացի պարենամթերք հայթայթելուց, նրանք կազմակերպեցին կամավորական տասնյակ դրուժինաներ ու անվեհեր մարտնչում էին ընդհանուր թշնամու դեմ: Հատկապես մեծ օգնություն էին ցույց տալիս արևմտահայերը: Ժամանակակիցներից մեկը վկայում է. «Հայկական համայնքը միշտ աչքի է ընկել իր նվիրվածությամբ...»: Հայերը «...զոհաբերելով իրենց գույքը և նույնիսկ կյանքը, միասնական են եղել ռուսական զորքերի հետ» (էջ 34):

Ռուսաստանը փայլուն հաղթանակ տարավ Պարսկաստանի դեմ մղվող մարտերում: 1813 թ. հոկտեմբերին կնքված Գյուլիստանի պայմանագրով պարսկական պետությունը Ռուսաստանին միացված ճանաչեց Վրաստանը, Դաղստանը, Մենգրելիան, Իմերեթիան, Գուրիան, Աբխազիան, Ղարաբաղի, Գյանջայի, Շաքիի, Շիրվանի, Դերբենդի, Ղուբայի, Բաքվի և Թալիշի խանությունները, Լոռու, Շամշադինի, Ջանգեզուրի և Շորագյալի գավառները: 1812 թ. մայիսի 12-ի՝ Բուխարեստի հաշտության պայմանագրով թուրքական սահմանը դարձավ Դնեպր—Պրուտ սահմանագիծը: Ռուսաստանին անցան Սև ծովի ափին գտնվող մի քանի երկրամասեր:

Հայ ժողովրդի հոծ զանգվածները մեկ անգամ ևս համոզվեցին, որ պատմական Հայաստանի ազատագրումը հետամնաց ռազմաֆեոդալական պետությունների լծից հնարավոր էր միայն Ռուսաստանի օգնությամբ:

Գրախոսվող աշխատության հաջորդ գլխում քննության է առնված ռուս-թուրքական 1828—1829 թթ. պատերազմի տարիներին Անդրկովկասի ժողովուրդների, ինչպես և հայերի բազմակողմանի օգնությունը ռուսական կովկասյան բանակին, արտացոլված է նրանց հետ հաստատված սերտ բարեկամությունը:

1812 թ. հայրենական պատերազմում նապոլեոնյան բանակների ջախջախումից հետո Ռուսաստանի հեղինակությունն ավելի բարձրացավ: Ռուսաստանի տնտեսական ու քաղաքական շահերը պահանջում էին շարունակել Արևելյան քաղաքականությունը: Մանավանդ դրա համար պարարտ հող էր ստեղծվել: Բալկանյան երկրների ժողովուրդները կյանքի ու մահվան կռիվ էին մղում՝ ընդմիշտ թոթափելու թուրքական լուծը: Հեղինակը քննության է առել XIX դարի 20-ական թվականների իրադարձությունները, հատկապես, ռուս-թուրքական պատերազմի կովկասյան ճակատի գործողությունները: Ռուսական զենքը փայլուն հաղթանակ տարավ Կովկասում, որը վճռական նշանակություն ունեցավ նաև բալկանյան ճակատում ռազմական գործողությունների հաղթական ավարտի համար:

Եթե ռուս-թուրքական 1806—1812 թթ. պատերազմի ընթացքում Անդրկովկասի ժողովուրդները, այդ թվում և հայերը ռուսական բանակին օգնում էին տարերայնորեն, և այդ օգնությունը էպիզոդիկ բնույթ ուներ, ապա այս պատերազմում այն ավելի կազմակերպված էր: Իսկ ամենագլխավորը՝ Կարսի, Բայազետի, Էրզրումի, Ախալցխայի և Ախալքալակի համար մղվող մարտերում վճռական մասնակցություն է ունեցել տեղի բնակչությունը: Աշխատության հեղինակը վավերագրական բազմաթիվ փաստերի հիման վրա ցույց է տալիս հայերի, վրացիների, եզդիբեկջանցիների համագործակցությունը, եղբայրական բարեկամությունը ռուս զինվորների հետ: Ժամանակակիցներից Լաչինովը գրում է. «Նկատելի էր, որ աչքի ընկնելու ցանկությունը չէր միայն բորբոքվել զինվորների մեջ, այլ ամեն մեկի հոգում հարազատ ինչ-որ զգացմունք համակում էր բոլորին:

Եվ զարմանալի չէ, խաղաղ բնակիչները իրենց մեր պաշտպանությանն էին հանձնում: Մենք տեսանք նրանց լիակատար վստահությունը ռուսների հանդեպ, նրանց երախտագիտությունը մեզ հույզեց» (էջ 73):

Ռուսական բանակը 1829 թ. կեսերին կանգնած էր Կոստանդնուպոլսի մատույցներում: Օսմանյան կառավարությունը հարկադրված էր Ռուսաստանից հաշտություն խնդրել: Ճիշտ է, Ռուսաստանն ամբողջովին չվայելեց հաղթության պտուղները: Թուրքիայի թիկունքին կանգնած արևմտա-եվրոպական պետությունները հարկադրեցին Ռուսաստանին ետ վերադարձնել Արևմտյան Հայաստանի ազատագրված տերիտորիաները: Սակայն Ադրիանապոլսի պայմանագրով Կարսից, Էրզրումից, Ալաշկերտից մոտ 100 հազար հայեր իրավունք ստացան գաղթելու Կովկասի սահմանները: Նրանք ընդմիշտ փրկվեցին ֆիզիկական բնաջնջումից:

Ռուս և հայ բարեկամությունն ավելի քան սերտացավ, նոր երանգ ընդունեց Ղրիմի պատերազմի տարիներին: Հեղինակն այդ թեմային անդրադարձել է տարիներ առաջ և գրել առանձին ուսումնասիրություն: Սակայն այդ ժամանակահատվածի պատմությունն ավելի ամբողջացնելու նպատակով այս անգամ նա օգտագործել է արխիվային նորահայտ փաստաթղթեր:

Անցյալ դարի կեսերին ավելի ու ավելի էին սրվում հակասությունները Ռուսաստանի և անգլո-ֆրանսիական գաղութատիրական պետությունների միջև: Փոքր Ասիան հակասությունների հանգուցակետն էր, որը և հանգեցրեց պատերազմի: Պատերազմական գործողությունները դարձյալ ծավալվում էին երկու ճակատով — Բալկանյան և Կովկասյան: Կովկասում պատերազմական գործողություններն սկսվեցին 1853 թվականի հոկտեմբերի վերջերին:

Անդրկովկասի գրեթե բոլոր ժողովուրդները, այդ թվում և հայերը գործնական մասնակցություն ունեցան պատերազմին: Ուշագրավ են Բաշ-Քադըկլարի, Քուրուք-Դարայի, Ախալցխայի, Կարսի ճակատամարտերը, որոնց մասնակցել են տեղերում կազմակերպված մի քանի տասնյակ կամավորական գնդեր, հարյուրակներ, միլիցիայի ջոկատներ, որոնց մասնակցությունը նույնպես կարևոր էր ռուսական բանակի հաղթանակի համար՝ Կովկասյան ճակատում:

Ղրիմի պատերազմի համար վճռորոշ էր Կարսի գրավումը: «Կարսի անկումը,— գրել է Մարքսը,— համարվեց շրջադարձային կետ Ռուսաստանի դեմ մղած կարծեցյալ պատերազմի պատմության մեջ: Առանց Կարսի անկման չէին կարող լինել... ոչ կոնֆերանսը, ոչ Փարիզի պայմանագիրը» (էջ 199—200):

Անդրկովկասի և Արևելյան Հայաստանի ազատագրումից հետո երկրամասի բոլոր ժողովուրդների համար ստեղծվեցին առաջընթացի պայմաններ, մեծ չափով զարգացան արդյունաբերությունը, առևտուրը, մշակութային կյանքը: Ավելի էր սերտանում ժողովուրդների բարեկամությունը, որն առավել դրսևորվեց նաև ռուս-թուր-

* Ա. Մ. Պողոսյան, Ռուս-հայ բարեկամության պատմությունից, «Հայաստան» հրատ., Երևան, 1974, 293 էջ:

անձնավորվել, դարձել է խմբագիր-հրատարակիչ, որն իբր 1909-ին Կ. Պոլսում (°) լույս է ընծայել «Եռամսյան» (այդպես էլ գրված է տեքստում, տե՛ս էջ 243, № 30) կոչվող «պարբերականը»:

Բայց անդրադառնանք այն պարբերականներին, որոնց անունները հոդված-հաղորդման հեղինակը չի կարողացել գտնել իր հիշատակած ցուցակներում և համարել է «նորահայտ»: Ահա մի քանի օրինակ. «Հ. Մ. Ը. Մ.— Մարզական պարբերաթերթ: Օրգան Հ. Մ. Ը. Մ-ի Պլովդիվի մասնաճյուղի: Լույս է տեսել 1920-ական թվերին» (էջ 242, № 19):

Սա համեմատենք Հ. Պետրոսյանի ցուցակի հետ (Հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիա, հ. 2, էջ 398):

«Հ. Մ. Ը. Մ. Պարբերաթերթ Հայ մարմնակրթական ընդհանուր միության: Ֆիլիպե (Բուլղարիա), 1925—1926»: Ապա տրվում են էջերը, չափսերը, խմբագիրների և հրատարակիչների ազգանունները, 1926-ի № № 5—6-ի բովանդակությունը և այլն: Նույնը կա և Ա. Կիրակոսյանի կազմած գրքում (Հայ պարբերական մամուլի մատենագիտություն, էջ 323, № 2185): Այս տվյալները Ն. Միքայելյանի հաղորդած տեղեկություններից տարբերվում են, բացի շատ ավելի լրիվ լինելուց, հրատարակության վայրի տարբեր անուններով՝ Պլովդիվ և Ֆիլիպե: Բայց չէ՞ որ Պլովդիվը նույն Ֆիլիպեն է:

Այսպես է վարվել Ն. Միքայելյանը և «Ամսօրյա շրջաբերականի» հետ (էջ 242, № 16): Այն կա և՛ Հ. Պետրոսյանի Հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիայում (նույն հատորում, էջ 497) և Ա. Կիրակոսյանի Հայ պարբերական մամուլի մատենագիտության մեջ (№ 2184) «Հ. Մ. Ը. Մ., ամսօրյա շրջաբերական» ճիշտ անունով: Եվ այսպես, էլի շատ անուններ՝ «Մարզիկ», «Կիլիկիա», «Ազգ» (Բոստոնի ռամկավարական թերթը), «Ազդակ», «Լույս» և այլն: Ի դեպ, «Լույս»-ի մասին:

Թեոդիկը 1911 թ. իր տարեցույցում «Լույս»-ի վերաբերյալ տեղեկությունները հաղորդում է Ե. Թոփչյանի մահվան (սպանության) կապակցությամբ, Կարինում 1909 թ.: Ն. Միքայելյանը, տեղյակ չլինելով, որ Ե. Թոփչյանի կազմած «Լույսը» հրատարակվել է Թիֆլիսում, ենթադրել է, թե դա ինչ-որ նոր բան է, քանի որ մամուլի մեր ցուցակներում Կարինի դիմաց «Լույս» անունը չկա: Ահա թե ինչպես Ն. Միքայելյանի թեթև ձեռքով «նոր» անուններ են ծնվում հայ մամուլի պատմության մեջ:

Իր «նորահայտ» պարբերականների ցուցակում Ն. Միքայելյանը բերում է նաև մեկուկես տասնյակ հայկական օտարալեզու թերթերի ու հանդեսների անուններ: Ահա այդ «նորահայտներից» մի քանի նմուշ. „La voix l'Armenie“ (տե՛ս Հ. Պետրոսյան, Բ. հատ., էջ 315), „The Armenian„ (նույն տեղը, էջ 195), „Pro Armenia“ (նույն տեղը, էջ 38):

Մյուս անունները և դեռ ավելին ընթերցողը կարող է գտնել Ա. Սալմասլյանի Հայկական մատենագիտություն (Bibliographie de l'Armenie) գրքում, որ հրատարակել է գիտությունների ակադեմիան Երևանում, 1969 թ.: Ն. Միքայելյանի թվարկած անուններում կան և կրկնություններ, թվականների և այլ սխալներ: Բացի այդ, չի կարելի ամեն մի օտարալեզու պարբերական, որի խմբագիրը կամ հրատարակիչը հայ է եղել, համարել հայկական: Այդպես է վարվել նա, օրինակ, The British Empire Trade "Journol-ի հետ և այլն:

Ն. Միքայելյանի ցուցակի երկրորդ մասում հիշատակվում է 22 անուն պարբերական: Կազմողը խոստանում է տալ դրանց մասին «որոշ ճշգրտումներ ու հավելումներ»: Սակայն փաստորեն այդտեղ ևս նոր բան չի ասում: Մի քանի տեղեկություն նա ավելացնում է «Բույրի» մասին, վերցնելով դրանք Ա. Փոլատյանի Պատմություն հայոց Առաբկիրի գրքից: Բայց «Բույրը» ձեռագիր թերթ է, և չէինք հիշատակի դրա մասին, եթե այն մտած չլիներ Գ. Լևոնյանի հանրահայտ գրքում, որտեղից և նույնությամբ անցել է մյուս ցուցակների մեջ: Լևոնյանը պարզապես տեղյակ չի եղել, որ «Բույրը» ձեռագիր թերթ է: Ձեռագիր թերթերն առհասարակ նա չի մտցրել իր ցուցակի մեջ և ճիշտ է վարվել: Ինչ վերաբերվում է այդ մասի մյուս անուններին, ապա Ն. Միքայելյանը դրանք ներկայացնում է հաճախ ավելի պակաս տեղեկություններով, քան նկարագրված են մամուլի ցուցակներում: Այսպես՝

2. «Արաքս—Տասնօրյա պարբերաթերթ, լույս է տեսել Փարիզում 1952—1955 թթ.» (էջ 246):

Ա. Կիրակոսյանի մոտ կարդում ենք (№ 1398).

«Արաքս: Մանկական պատկերազարդ պարբերաթերթ: Փարիզ, 1952—1955». ապա տրվում են տնօրենի և խմբագրի ազգանունները, որոնք Ն. Միքայելյանի մոտ չկան:

3. «Ծաղիկ—Ծաղրաթերթ (երգիծաթերթ), լույս է տեսել Կ. Պոլսում 1908—09 թթ.» (էջ 246):

Ա. Կիրակոսյանի մոտ (№ 503ա).

«Ծաղիկ: Երկօրյա (ծաղրաթերթ): Կ. Պոլիս, 1908—1909», ապա տրվում են խմբագիրների ազգանունները, որոնք Ն. Միքայելյանի մոտ չկան:

4. Գրպանի տարեցույց— Հրատարակել է Սիմոն Գարամաճյանը Փարիզում (միայն այսքանը, էջ 247):

Ա. Կիրակոսյանի մոտ (№ 1653).

«Գրպանի տարեցույց: Կ. Պոլիս (տպարանները թվարկելուց հետո). 1920—1940, 14×9 սմ: Կազմեց՝ Ս. Գարամաճյան»:

Եվ այսպես, փոքր տարբերություններ են միայն մինչև վերջ, էական ոչինչ չի ավելացվում եղած տեղեկություններին, բացի այն անընդհատ հիշեցումներից, թե դրանցից այս կամ այն համարն ինքն ունեցել ու հանձնել է ՀՍՍՀ ԳԱ հիմնական գրադարանին:

Այսպիսով, Ն. Միքայելյանը ձեռնարկել է իր հոդված-հաղորդմանը հապճեպորեն, առանց ճշգրտելու ընդգրկվող նյութի սահմանները և առանց լրջորեն ուսումնասիրելու աղբյուրները:

Նյութի սահմանների կամ պարբերական մամուլի հասկացության մասին խոսեցինք: Երկու խոսք նրա օգտագործած աղբյուրների վերաբերյալ: Դրանցից հիմնականը Թեոդիկի «Ամենուն տարեցույցներն» են, որոնցից այս կամ այն չափով օգտվել են հայ պարբերական մամուլի մատենագիտությամբ զբաղվողները: Ն. Միքայելյանն իր ցուցակի մոտ 20 անունը վերցրել է Թեոդիկից և, եթե հրապարակված ցուցակներում չկա, օրինակ, Ն. Միքայելյանի հիշատակած Կ. Պոլսի «Տոնացույցը» (№ 39), զանազան օրացույցներ և այլն, ապա դրա պատճառը այն չէ, որ հայ մատենագետներն անծանոթ են Թեոդիկի տարեցույցներին կամ նրա «Տիպ ու տառ»-ին, այլ որովհետև դրանք պարբերականներ չեն:

Մյուս աղբյուրները, որոնց դիմել է Ն. Միքայելյանը, լրագրերում պատահականորեն հանդիպած նյութեր են, դրանցից քաղված են կցկտուր տեղեկություններ, որոնք դեռևս բավարար հիմք չեն մեր մամուլի մատենագիտության մեջ ճշգրտումներ կամ լրացումներ կատարելու համար: Ինչպես տեսանք, այդպես է վարվել նա Եր. Օտյանի Գրական ճիշտակների հետ, վերցնելով տեղեկությունները «Հառաջ»-ի առանձին թերթոններից, փոխանակ ավելի հիմնովին ծանոթանալու Օտյանի հուշագրություններին, որոնք (մասնավորապես Տասներկու տարի Պոլսեն դուրս) հարուստ ու հետաքրքրական նյութ են պարունակում մեր մամուլի մասին: Մակերեսայնորեն նյութեր քաղելու հետևանք են և երկրորդ մասում հիշատակված Պոլսի հայտնի «Արևելք», Վառնայի «Լուսարձակ», Աթենքի «Արարատ» թերթերի մասին գրածները, որ նա վերցրել է «Զարթոնք» թերթում Հովհ. Պողոսյանի մահվան առթիվ տպված հոդվածից և այլն:

Այս հոդվածն արդեն պատրաստ էր տպագրության, երբ լույս տեսավ «Բանբեր Հայաստանի արխիվների» 1974 թ. վերջին՝ 3-րդ համարը, որտեղ Ն. Միքայելյանն ունի նույնանման մի այլ նյութ՝ Սփյուռքահայ պարբերական մամուլի նորահայտ օրինակներ (°) վերնագրով (էջ 221—228):

Այստեղ ևս հեղինակը թվարկում է անուններ, որոնք կամ պարբերական մամուլի օրգաններ չեն (ձեռագիր թերթեր, պատի, գրպանի օրացույցներ, ինչպես՝ «Ծաղկոց», «Ծովակ», «Շիրակ» և այլն), կամ վաղուց հայտնի են (օրինակ, Հ. Էկինյանի «Ազատություն»-ը, Լոնդոնի «Նոր կյանք»-ը և այլն): Վերջին տարիներին լույս տեսած մի քանի անուն պարբերականների մասին բերված տեղեկություններն էլ («Հույս»—Թեհրան, «Սարդարապատ»—Լոնդոն և այլն) հեղինակը վերցնում է ոչ թե առկա օրինակներից, որոնք կան մեր գրադարաններում, այլ՝ երկրորդական աղբյուրներից (գրքեր, թերթեր, հանդեսներ):

Հայ մամուլի անծանոթ մնացած անունների, նոր տեղեկությունների հայտնաբերումը շնորհակալ աշխատանք է: Բայց դա պետք է անել ձեռնհասորեն, հենվելով հավաստի ու համոզիչ փաստերի վրա: Հակառակ դեպքում դա կավելացնի մեր ցուցակներին մի ավելորդ ու ծանր բեռ, որից, ինչպես ցույց է տալիս անցյալի փորձը, դժվար է ազատվել նույնիսկ հմուտ մատենագետներին:

Մ. Ա. ԲԱՐԼՈՅԱՆ

# ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԻՆ ՆՎԻՐՎԱԾ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ

Վերջին տարիներս մեր երկրում ռուսերեն հրատարակվել են բազմաթիվ ուշագրավ աշխատություններ, որոնցում արծարծվել են ընդհանրապես հասարակության կառավարման և մասնավորապես սոցիալիստական հասարակության գիտական կառավարման զանազան հարցեր։ Լուսաբանվում են նաև կառավարման սիստեմը, էությունը, օրինաչափությունները, սկզբունքները, մեթոդները, տարբեր ասպեկտներ և այլն։ Սակայն առավելապես ուշադրություն հատկացնելով արտադրության կառավարմանը, դրանց հեղինակներն անբավարար են լուսաբանում հասարակության կառավարման հարցերն ամբողջությամբ վերցրած։

Այդ տեսակետից ուշագրավ է Մ. Հ. Անտոնյանի ՍՄԿԿ XXIV համագումարը և սոցիալիստական հասարակության կառավարման հարցեր հայերեն մենագրությունը։

Պետք է ասել, որ կառավարման էությունն ու բովանդակությունը բնորոշելու հարցում փիլիսոփաները, սոցիոլոգները, տնտեսագետները, իրավաբանները դեռևս համակարծիք չեն։ Գրախոսվող աշխատության հեղինակը շարադրում է այս առթիվ եղած տեսակետները և իր կարծիքը հայտնում կառավարման տեսության այս կամ այն հարցի շուրջ՝ հավատարիմ մնալով պրոբլեմի քննարկման սոցիոլոգիական ասպեկտին։ Ընդ որում, աշխատության մեջ կառավարման գիտության զարգացման հրատապ պրոբլեմները քննարկվում են կառավարման արվեստի հարցերի հետ օրգանապես շաղկապված։

Բացահայտելով հասարակության կառավարման էության վերաբերյալ եղած բնորոշումների բազմազանության պատճառները և օգտագործելով սովետական գիտության նվաճումները այդ բնագավառում, հեղինակը տալիս է կառավարման իր բնորոշումը, որը, հիմնականում ճիշտ լինելով, կարիք ունի ավելի հակիրճ ձևակերպման։ Ինչպես հայտնի է, սոցիալիստական հասարակության կառավարման գլխավոր խնդիրը գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումն է տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ։ Անհրաժեշտ է լայնորեն զարգացնել գիտությունն արտադրությանը համադրելու սոցիալիզմին հատուկ ձևերը և ապահովել ողջ հասարակության ինտենսիվ զարգացումը, հանրային արտադրության արդյունավետության վճռական բարձրացումը, որպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման շղթայի այն հիմնական օղակ, որից հետո հարկավոր է նախապատրաստել պայմաններ հաջորդին անցնելու համար։

«Խոսքն ըստ էության այն մասին է,— ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— թե մենք ինչպես ավելի լավ կազմակերպենք հասարակության գործունեությունը տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու ուղղությամբ, ապահովենք առկա հնարավորությունների առավել լիակատար օգտագործումը, հարյուր հազարավոր կոլեկտիվները, տասնյակ միլիոնավոր աշխատավորներին է՛լ ավելի սերտորեն միավորենք կուսակցական քաղաքականության գլխավոր նպատակների շուրջը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 86)։

Այստեղից հետևում է, որ հասարակության կառավարումը կարելի է բնորոշել որպես հասարակական վերարտադրության նպատակամղված կոորդինացում, համաձայնեցվածություն։

Նշելով, որ «հասարակության կառավարում» կատեգորիան անխզելի կապված է «հասարակության կառավարման սիստեմ» կատեգորիայի հետ և, որ վերջինս համեմատաբար նոր կատեգորիա է և ճանաչողական մեծ նշանակություն ունի, հեղինակը տալիս է նրա կոնկրետ կառուցվածքը, վերջինիս մեջ ներառնելով կոմունիստական կուսակցությունը, սոցիալիստական պետությունը, արհմիությունները և մյուս բոլոր հասարակական կազմակերպությունները, մասսայական ինֆորմացիայի միջոցները (մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը)։

Այնուհետև Մ. Անտոնյանը շեշտելով ղեկավարում և կառավարում հասկացությունների տարբեր մեկնաբանությունների առկայությունը, պաշտպանում է այն կարծիքը, որ դրանց մեջ կա և՛ ընդհանրություն և՛ տարբերություն՝ վկայակոչելով Վլ. Դալի բացատրական բառարանում տրված սահմանումները։ Ըստ նրա՝ կառավարում նշանակում է վարել, ընթացք տալ, կարգադրություն անել, տնօրինել, լինել մի բանի տնօրեն-կարգադրիչ, իսկ ղեկավարել նշանակում է նույնպես կառավարել, բայց խորհուրդ, ցուցում տալու, հետևելու, սովորեցնելու իմաստով։ Թեպետ այստեղ միանգամայն ճիշտ կերպով ընդունվում է, որ ղեկավարումն ավելի լայն հասկացություն է, բայց ինչպես Դալի, այնպես էլ Անտոնյանի սահմանումներում, ըստ էության նույնացվում են կառավարում ու ղեկավարում հասկացությունները։

Հանրահայտ է, որ ղեկավարումը, կառավարումից բացի, ներառում է նաև պլանավորումն ու տնտեսավարումը։ Ղեկավարման այդ եռմիասնական բանաձևը պարզորոշ ձևակերպվեց ՍՄԿԿ XXIV համագումարում և Կենտկոմի դեկտեմբերյան (1973 թ.) պլենումում։ Մասնավորապես, սոցիալիզմի պայմաններում ժողտնտեսության ղեկավարման կենտրոնական օղակը, միջուկը պլանավորումն է, որոշիչ օղակը կառավարումն է և վճռող օղակը՝ տնտեսավարումը, ինչպես ասված է համագումարին կուսակցության Կենտկոմի տված հաշվետվության մեջ։

Գրքի երկրորդ գլխում քննարկվում է հասարակության կառավարումը որպես գիտություն և արվեստ։ Միանգամայն ճիշտ է նշվում, որ եթե վարչական գործունեությունը չի ելնում այդ երկու բաղկացուցիչ մասերի դիալեկտիկական միասնությունից, եթե գործում է դրանցից լոկ մեկը, ապա կառավարող և կառավարվող սիստեմները (կառավարման սուբյեկտը և օբյեկտը) ի վիճակի չեն լինի ծավալելու իրենց բոլոր հնարավորություններն ու կարողությունները՝ ողջ հասարակության լավագույն գործելակերպն ապահովելու համար։

Հեղինակը գիտականորեն հիմնավորում է հասարակության կառավարումը ոչ միայն գիտություն, այլև արվեստ լինելու հանգամանքը, վերլուծում դրանց դիալեկտիկական միասնության հետ կապված մի շարք կարևոր պրոբլեմներ։

Կառավարման գիտությունն ուսումնասիրում է ժողովրդատնտեսական պլանների կատարումը կազմակերպելու կոնկրետ հարցերը, իր տեսական հիմքում դնելով մարքսիստական-լենինյան քաղաքատնտեսությունը, մեթոդոլոգիապես հենվելով դիալեկտիկական մատերիալիզմի վրա և ելնելով պատմական մատերիալիզմի դիրքերից։ Այդ գիտությունը կառավարվող օբյեկտի նկատմամբ ունի կոմպլեքսային, սիստեմային մոտեցում և այն հետազոտելիս օգտագործում է մոդելավորման, էկոնոմիկա-մաթեմատիկական, սոցիոլոգիական ու այլ կարգի եղանակներ, ինչպես նաև տեխնիկական, կիբեռնետիկական, ավտոմատացված ու շատ ուրիշ միջոցներ։

Ինչ վերաբերում է կառավարման արվեստին, ապա դա բարդ, դինամիկ սիստեմի բոլոր ձևերի, մեթոդների, եղանակների պրակտիկ տիրապետումն է, գործնական հարցերի լուծմանը ստեղծագործաբար մոտենալու հմտությունը, որը հաշվի է առնում հասարակության օբյեկտիվ օրենքներին լիովին համապատասխան նրա զարգացման կոնկրետ պայմանները։

Գրքի հաջորդ գլխում հեղինակը հմուտ և գիտական պատշաճ մակարդակով պատասխանում է այն հարցին, թե կարող է, արդյոք, արտադրության կառավարման գիտությունը, բնական և տեխնիկական գիտությունների նման, փոխարկվել հասարակության անմիջական արտադրուժի, թե ոչ։ Տալով այդ հարցին դրական և համոզիչ պատասխան, նա բացահայտում է այդ փոխարկման յուրահատկությունը, դրա մեխանիզմը և մատնացույց անում տվյալ պրոցեսի ինքնատիպ ուղիները, հենվելով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների մեթոդոլոգիական ցուցումների, մարքս-լենինյան մտքի ժամանակակից նվաճումների և կոմունիստական շինարարության կուտակված փորձի վրա։ Եվ, իրոք, դեռևս սոցիալիստական շինարարության արշալույսին, Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ կառավարման խնդիրը հանգում է ամենից առաջ և գլխավորապես զուտ արտադրաուժերի զարգացման, արդյունքների արտադրության ու բաշխման նկատմամբ իրականացվող հաշվառումն ու վերահսկողությունը կարգի գցելու, աշխատանքի արտադրողականությունը և ընդհանրապես հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու տնտեսական խնդրին։ «Մի խոսքով,— շարունակում է Վ. Ի. Լենինը,— այն հանգում է տնտեսական վերակառուցման խնդրին» (ПСС, т. 36, стр. 130)։

Այդ կապակցությամբ Մ. Անտոնյանը միանգամայն տեղին վկայակոչում է նաև ՍՄԿԿ XXIII համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ արտահայտած այն էական միտքը, թե «Հասարակական գիտությունների զարգացումը և պրակտիկայում նրանց հանձնարարականների արմատավորումը ոչ պակաս կարևոր դեր են խաղում, քան բնական գիտությունների նվաճումների օգտագործումը նյութական արտադրոլորտում և ժողովրդի հոգևոր կյանքի զարգացման մեջ» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 136)։

Այս միտքն է՛լ ավելի կոնկրետացվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, որը կառավարման ողջ սիստեմի կատարելագործումը համարեց հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գլխավոր ուղիներից մեկը։ Հեղինակը կառավարման գիտությունն անմիջական արտադրաուժ դարձնելու թեզն ավելի հանգամանալի փաստարկում է հենց արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում կա-

ռավարման դերը հիմնավորելու միջոցով:

Վերջին գլխում ցույց է տրվում ՍՄԿԿ ղեկավար դերի աճը սոցիալիստական հասարակության կառավարման գործում: Արդի փուլում կուսակցության ղեկավար դերի բարձրացումը պայմանավորվում է սոցիալիստական հասարակության բոլոր կողմերի, առաջին հերթին, արտադրության գիտական կառավարման հարաճուն նշանակությամբ: Եվ դա հասկանալի է, որովհետև գիտատեխնիկական հեղափոխությունն, ամենից առաջ, շոշափում է նյութական բարիքների արտադրությունը: Մեր ժամանակներում անհնար է կառավարել արտադրությունը, ելնելով լոկ պրակտիկ փորձից: Հարկավոր է նաև տիրապետել կառավարման ժամանակակից գիտությանը, պետք է կարողանալ գիտությունը շաղկապել կառավարման արվեստին, հաշվի առնել, ինչպես ամենայն խորաթափանցությամբ նկատել է Ջ. Բեռնալը, որ ժամանակակից արտադրությունը «ամբողջովին ներծծված է գիտությամբ»:

Այսպիսով, որոշ թերություններով հանդերձ, այնուամենայնիվ, Մ. Հ. Անտոնյանի ՍՄԿԿ XXIV համագումարը և սոցիալիստական հասարակության կառավարման հարցեր աշխատությունը մայրենի լեզվով գրված առաջին լուրջ գիտական հետազոտություններից է, որը որոշակի ներդրում է սոցիալիստական հասարակության կառավարման գիտական հիմունքների մշակման շնորհակալ մարզում և հիմնականում պարզորոշ լույս է սփռում դրանց վրա:

Գրախոսվող մենագրությունը միաժամանակ օգտակար ձեռնարկ է ընթերցողների լայն շրջանների, քաղաքական ու տնտեսագիտական կրթության սիստեմի տարբեր դպրոցների, դասընթացների ու սեմինարների ունկնդիրների համար, որոնք ուսումնասիրում են կառավարման գիտությունն ու պրակտիկան, էկոնոմիկայի կառավարման գիտական հիմունքները և սոցիալիստական հասարակության ղեկավարման մեխանիզմի կատարելագործման ուրիշ շատ արդի պրոբլեմներ:

Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 03519 Պատվեր 2046 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 14200 Գինը 20 կ.:

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 22/I—1975 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի այցը Հնդկաստան, 1973 թ. նոյեմբերի 20—30-ը: Ճառեր և փաստաթղթեր. *Մ.*, Политиздат, *1974:*

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի այցը Կուբայի Հանրապետություն, 1974 թ. հունվարի 28-ից փետրվարի 3-ը: Ճառեր և փաստաթղթեր. *Մ.*, Политиздат, *1974:*

Լ. ՖՈՅԵՐԲԱԽ— Փիլիսոփայության պատմություն: *Ստեղծագործությունների ժողովածու 3 հատորով, հատ. 1, Մ.,* «Мысль» *հրատ., 1974:*

Ն. Ֆ. ՇԻՏՈՎ— Լենինը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը. *Մ.*, Политиздат, *1974:*

*Նախատեսված է հասարակական գիտությունների դասախոսների, պրոպագանդիստների, կուսուսուցման սիստեմի ունկնդիրների համար:*

ԻՐԻՆԱ ԳՈՒՐՈ— Լաստենու ծառուղին *(Կլարա Ցետկինի մասին). Մ.,* Политиздат, *1974:*

Վլ. ԿՈՆՅՈՒՇԵՎ— Այդպիսի կապույտ երկինք *(Նադեժդա Կրուպսկայայի մասին). Մ.,* Политиздат, *1974:*

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ (ԴԵԳՈՒՇԿԱ)— Երկեր. *«Հայաստան» հրատ., 1974:*

Դարի որդիներն են. *Մ.*, Политиздат, *1974:*

*Ժողովածուում զետեղված ակնարկների հեղինակները պատմում են մեր օրերի կոմունիստների հերոսագործությունների, երազանքների մասին. մարդիկ, որոնք ունեն նորի զգացում, տեսնում են զարգացման հեռանկարները, կարողանում են կանխատեսել ապագան և գտնել առաջադրված խնդիրների լուծման ճիշտ ուղիներ:*

Կոմունիստական մանիֆեստ և արդիականություն. *Կոմունիստական կուսակցության մանիֆեստի 125-ամյակին նվիրված գիտական կոնֆերանսի նյութերը. Մ.,* Политиздат, *1974:*

Մեթոդական ձեռնարկ. *Քաղաքատնտեսության կուրսի ուսումնասիրման համար (I բաժին— Նախակապիտալիստական արտադրաեղանակը: II բաժին— Կապիտալիստական արտադրաեղանակը: III բաժին— Սոցիալիզմը կոմունիստական արտադրաեղանակի առաջին փուլն է). Մ.,* «Мысль» *հրատ., 1974:*

Փիլիսոփայական մեթոդական ձեռնարկ մարքսիզմ-լենինիզմի դպրոցների համար. Մ., Политиздат, 1974:

Ա. Մ. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ— Ամբողջ կյանքի գործը. *«Կյանք, իմ մասին» սերիայից. Մ.,* Политиздат, *1974:*

ԳՈՒՍՏԱՎ ՀՈՒՍԱԿ— Ընտիր հոդվածներ և ճառեր 1969 թ. հոկտեմբերից 1973 թ. հուլիս. *Մ.*, Политиздат, *1974:*

Ա. ՀԱՅՐԻՅԱՆ— Ընտանիքի սոցիոլոգիական ուսումնասիրություններ *(ըստ Հայկական ՍՍՀ գյուղական շրջանների նյութերի). «Հայաստան» հրատ., 1974 (ռուսերեն):*

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ— Մասնագիտություն և միջնակարգ կրթություն. *«Հայաստան» հրատ., 1974:*

Հայկական արվեստ—1: Հին և միջին դարեր. *«Հայաստան» հրատ., 1974:*

Ճեմսպիրական—4. *«Հայաստան» հրատ., 1974:*

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ— Հայ կերպարվեստը XVII—XVIII դարերում. *«Հայաստան» հրատ., 1974:*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԱՏԿԵՐ՝ ԼԱԶԵՐԱՅԻՆ ԳՐՉՈՎ

*Մոսկվայի պոլիգրաֆ ինստիտուտի մի խումբ աշխատակիցներ, պետական մրցանակի դափնեկիր, պրոֆեսոր Վ. Կազակևիչի ղեկավարությամբ, ստեղծել են տպագրական կլիշեների պատրաստման արտասովոր մեքենա: Ցուցաբազմացնող սարքը ստուգում է թմբուկին փակցված լուսանկարը և կարգավորում այն լազերի ճառագայթով, որը ցելյուլոիդե թիթեղի վրա խարանկարում է ճիշտ այդպիսի պատկեր: Կլիշեն պատրաստ է տպագրության:*

## ՔԻՄԻԱՅՈՒՄ ԹԱՓՈՆՆԵՐ ՉԿԱՆ

*Բուլղար ինժեներներ Կ. Կունդևը և Ա. Տատարսկին Ռազլոգ քաղաքի հիդրոլիզի գործարանում հոսքային ջրերի բիոլոգիական մաքրումից մնացած շլամից մշակել են սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատների պատրաստման մեթոդ: Այդ կոնցենտրատը գյուղատնտեսության համար արժեքավոր արտադրանք է, քանի որ պարունակում է 15 կարևոր ամինաթթուներ ու վիտամիններ: Դրանք խառնելով անասունների կերաբաժնին, զգալիորեն ավելացնում են նրանց աճն ու քաշը, խնայում զգալի քանակությամբ սպիտակուցային կեր: 200 լիտր շլամից ստացվում է 1 կգ սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատ:*

## ԲԱՆԱԼԻ, ՈՐ ՄԻՇՏ ՔԵԶ ՀԵՏ Է

*ԱՄՆ-ում շենքերի պաշտպանության ու պահպանման սիստեմի ստեղծողները, սովորական բանալիները փոխարինելով մագնիսային քարտերով, աստիճանաբար հանգեցին այն մտքին, թե ամենահուսալի փականն այն է, որը ռեակցիա է տալիս տանտիրոջ կամ վստահելի անձերի ձայներին ու ձեռքին: Երբ ձեռքի ափը դրվում է գծացանցավոր թափանցիկ սկավառակի վրա, տեղի է ունենում ափի 35 երկրաչափական պարամետրերի ակընթարթային չափում, ինչպես և համեմատում՝ սիստեմում դրված էտալոնի պարամետրերի հետ: Եթե դրանք համընկնում են, փականը բացվում է: Ստեղծողների կարծիքով, այդ սիստեմը կարող է կիրառվել առևտրի ավտոմատներում:*

## ՃԱՊՈՆԱԿԱՆ ԹԶՈՒԿԸ

*Աշխարհում ամենափոքր թրթուրավոր տրակտորը ստեղծվել է ճապոնական «Յանմար» ֆիրմայում: Դա այնքան փոքր է, որ նույնիսկ վարորդին նստելու տեղ չկա. մեքենան կառավարում է կողքից կամ ետևից գնացող մարդը: Տրակտորի հզորությունը 6,5 ձիաուժ է, կշիռը՝ 800 կգ: Այդ թզուկն ունի բուլդոզերային գութանաթև, որը ժամում 7 կմ արագությամբ փոխադրում է 3 խոր. մետր գրունտ: Տրակտորի երկարությունը գութանաթևի հետ միասին 2,5 մետր է, իսկ լայնությունը՝ 80 սմ: Այդպիսի փոքր չափի մեքենան առաջարկվում է դժվարամատչելի վայրերում՝ գյուղատնտեսական, շինարարական աշխատանքների համար:*

## ԷՀՄ-Ն՝ ԼՈԳԱՐԻԹՄԱԿԱՆ ՔԱՆՈՆ

*Ճապոնական «Քանոն» ֆիրման թողարկել է գրպանի էլեկտրոնային կարկուլյատոր, որն ունակ է կատարելու ինժեներական հաշվարկներ: «Պալմտրոնիկ Ф—5» մակնիշով սարքը, թվաբանական չորս գործողություններից բացի, կարող է արմատ հանել, հաշվել մակերեսներ, երկրաչափական մարմինների շառավիղներ ու ծավալներ, հաշվարկել եռանկյունաչափական ֆունկցիաներով, լոգարիթմներով, բարդ կոտորակներով: Կարկուլյատորը կշռում է 250 գրամ, իր չափով հավասար է ծխախոտատուփի, սնվում է ակումուլյատորից կամ մարտկոցներից:*